

# Երբ մեծանամ...

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Փոքրիկ եմ դեռ, բայց պիտի
Դառնամ խիզախ նավաստի,
Պիտի անցնեմ ես ծովեր
Շոգենավով իմ զորեղ,
Պիտի անվերջ նավարկեմ
Մինչև բևեռը հասնեմ:

Փոքր եմ, բայց երբ մեծանամ
Ու նավաստի ես դառնամ,
Ճամփա կտա իմ նավին
Անծայր Կարա-Կումը հին,
Ու ես կանցնեմ իմ նավով
Կոմունիզմի ճամփեքով:

Թախիա-Տաշից ջրանցքով
Ես կհասնեմ Կասպից ծով,
Կասպից ծովից էլ Վոլգա,
Վոլգայով դեպի Մոսկվա:

Վոլգայից թե ուզենամ
Դոնով Սև ծով կգնամ,
Թե ցանկանամ Վոլգայով
Կսլանամ Սպիտակ ծով.
Որտե՞ղ ասես չեմ հասնի
Երբ որ դառնամ նավաստի:



Լենինի–Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ




№ 2

ՓԵՏՐՎԱՐ

1952 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 24-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՔՆՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՄՈՏԵՆՈՒՄ ԵՆ...

Գորիսի № 2 դպրոցի 4-րդ դասարանի աշակերտներ՝ Ս. Կարապետյանը և Վ. Արզումանյանը աշխարհագրության դասը պատրաստելիս;





Ղ. ԽԱԽՈՒՏԱՇՎԻԼԻ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Արևածին էին կանչում Գիորգուն նրա ընկերները։ Այդ փոքրիկ տղան, որ տարիքով էլ մեծ չէր, շատ էր սիրում երգել։ Գիորգին տասներեք տարեկան ժիր ու դյուրագրգիռ մի տղա էր։ Հենց այսօր էլ նա իրեն ցույց տվեց. չհամաձայնվեց ընկերների հետ՝ սպասել մինչև երեկո։ Նրա սիրտը անհամբերությունից նեղվում էր։ Հենց որ դասերը վերջացան, իսկույն դուրս եկավ դպրոցից, վազեց ձորակով ու սկսեց բարձրանալ դեպի իր հիվանդ ուսուցչի տունը։ Ակնածանքով լցված, նա կանգ առավ ծանոթ տան բակի առաջ։ Պայուսակը թևի տակ սեղմած, անորոշ վիճակի մեջ, նա տատանվում էր՝ «Գուցե՞ նրան այժմ չի կարելի տեսնել, գուցե՞ նեղություն պատճառեմ և անհարմար վիճակի մեջ գցեմ» մտածեց նա։ Գիորգին ցանկանում էր ետ դառնալ, երբ ոտնաձայներ լսվեցին։ Տղան դեմքը դարձրեց դեպի եկողները։ Հանկարծ նրա աչքերը շառագունեցին։ Եկողը իրենց դպրոցի ուսուցիչներից էր, որ ուղեկցում էր ինչ-որ բարձրահասակ մի մարդու։ Նրանք երկուսն էլ լուռ էին, տխուր ու մտազբաղ։ Գիորգու սիրտը դողաց։

— Ի՞նչ ես անում այստեղ,—մոտենալով նրան հարցրեց ուսուցիչը։

— Մեր հիվանդ ուսուցչին եմ ուզում տեսնել, բայց...—ճնշված ձայնով պատասխանեց Գիորգին և գլուխը կախեց։

— Հապա էլ ինչո՞ւ ես այստեղ կանգնել, այստեղից հո չե՞ս կարող տեսնել։ Արի, արի հետս, միասին գնանք տեսնելու,—ասաց ուսուցիչն ու շարժվեց առաջ։

Գիորգին հետևեց նրան։ Բակի միջով անցնելով, նրանք բարձրացան պատշգամբ և մտան միջանցքը։ Ուսուցիչը դարձավ դեպի Գիորգին և զգուշացրեց.

— Մի քիչ սպասիր, թող բժիշկը քննի, հետո քեզ ներս կկանչեմ։

Ուսուցիչը զգուշությամբ դուռը բացեց, ներս հրավիրեց բժշկին, ու նորից ծածկեց։

Գիորգու սիրտը հուզմունքից սկսեց բաբախել։ Նա ուզում էր շուտ տեսնել հիվանդին, բայց վայրկյանները ժամեր էին թվում։

— Հապա մտիր, Գիո՛րգի,—կիսաբաց դռնից շշնջաց ուսուցիչը։

Գիորգին ներս մտավ. հուզմունքն ավելի ալեկոծեց նրա հոգին։

— Բարև, իմ սիրելի Գիո՛րգի... մոտ արի... ա՛յ, այս աթոռին նստիր,— նվաղկոտ ձայնով ասաց հիվանդն ու մի ակնարկ գցեց մահճակալի մոտ դրված աթոռին։

Գիորգին նստեց աթոռի ծայրին, հայացքը սևեռեց հիվանդի վրա և այլայլվեց։ «Վա՜յ, մի՞թե սա մեր ուսուցիչն է, ինչքա՜ն նիհարել ու գունաթափ է եղել»—ինքնիրեն շշնջաց նա ու սիրտը ցավից ճմլվեց։

— Բոլորդ լա՞վ եք, հո չե՞ք ծուլացել, էլ չարություն չե՞ք անում,—հազիվ լսելի ձայնով հարցրեց հիվանդը։

— Ո՜չ, լավ ենք սովորում,—այնպես զգացված, քաջալերող ձայնով պատասխանեց Գիորգին, որ թվաց, թե ամեն կերպ ցանկանում է թեթևացնել հիվանդ ուսուցչի վիշտը։

— Ճիշտ է ասում, Իլիա՛, քո դասարանն այնպիսի առաջադիմություն ցույց տվեց, որ դարձել է ամբողջ դպրոցի պարծանքը։—Նա դարձավ դեպի Գիորգին ու փաղաքշորեն ավելացրեց.—Արի երկար խոսակցություններով չհոգնեցնենք հիվանդին։ Իլիայի կողմից կողջունես բոլորին և...

Գիորգին իսկույն ոտքի կանգնեց։ Հիվանդը կարծես համաձայնվելով, գլուխը թեքեց բարձի վրա և մշուշված աչքերը փակեց։ Երբ տղան կրկին նայեց հիվանդի փակված աչքերին, ամբողջ մարմնով դողաց։

— Մնաք բարով, հարգելի՛ ուսուցիչ,—խեղդվող ձայնով շշնջաց Գիորգին և զգույշ բացեց դուռը։

— Սուլֆիդին է պետք։ Եթե շուտ չգըտնեք... հիվանդը շատ ծանր է։

Գիորգին այս խոսակցությունը լսեց, երբ միջանցքից դուրս եկավ։ Նա քայլերը դանդաղեցրեց և լարված ուշադրությամբ շարունակեց լսել։

— Այսօր ոչինչ չենք կարող անել։ Գորի մեկնող բոլոր մեքենաներն արդեն գնացել են, տներում ձի չկա. իսկ մեր դպրոցի պահակը ոտքով ե՞րբ կհասնի ու կվերադառնա,— հուսահատական տոնով պատասխանեց բժշկին երկրորդ ձայնը։

Գիորգու գլխում մի միտք փայլատակեց։ Նա շտապ իջավ սանդուղքներով և բակից դուրս վազեց։ Դռան մոտ կանգ առավ։

— Ներողություն, հարգելի՛ ուսուցիչ, ս՛հ, ի՞նչ եմ ասում, հարգելի բժիշկ,— աղերսական տոնով դիմեց Գիորգին բակից դուրս եկող բժշկին.— ասացեք, ինչո՞վ կարելի է օգնել մեր ուսուցչին... Նա ծանր հիվանդ է...— Գիորգու ձայնը խեղդվեց կոկորդում։

Բժիշկն ուրախությունից ժպտաց.

— Մի՞թե այդքան շատ ես սիրում քո ուսուցչին։ Ա՛յ, ապրե՛ս. բայց դու ի՞նչ կարող ես անել։ Նրան այնպիսի դեղ է հարկավոր, որ հիմա այստեղ չի ճարվում։

— Ասացե՛ք, ինչպե՞ս է կոչվում այդ դեղը,— թախանձագին խնդրեց Գիորգին։

— Սուլֆիդին, առանձնապես շատ է օգնում թոքերի բորբոքման ժամանակ, հասկացա՞ր։

— Իհարկե հասկացա, շնորհակալություն,— մտացրիվ պատասխանեց տղան, ապա տեղից պոկվելով վազեց դեպի հարևան տունը և բարձրաձայն աղաղակեց.

— Շաքրո՛, ա՛յ Շաքրո։

Բակից ոչ ոք չպատասխանեց։ Երևի բոլորը այգիներում են, իսկ Շաքրոն դպրոցից դեռ չի վերադարձել։ Ի՞նչ անել։ «Մինչև գնամ դպրոց և վերադառնամ, կուշանամ»,— մտածեց տղան և առանց վայրկյան կորցնելու, դռան արանքով ձեռքը տարավ, նիգը բացեց և վազեց դեպի դալար ճյուղերից գործված տնակը, որ Շաքրոյի գարնանային բնակարանն էր։ Նա առանձնապես սիրում էր այնտեղ պարապել և տնակի ներսը դասավորել էր իր ճաշակով։ Գրասեղան, գրքեր, մի աթոռ և մի քանի գործիք։

Գիորգին դռան ճեղքից նայեց և ուրախացած բացագանչեց.

— Այստեղ է, այստեղ, լավ է՝ ոչ ոքի չի տվել։

Գիորգին հաճախ էր Շաքրոյի հետ այստեղ դասերը սովորում։ Դռան բանալիի տեղը և բացելու ձևն էլ շատ լավ գիտեր։ Տղան տնակի ծածկոցի տակից հանեց բանալին, բացեց դուռը։ Պատի տակ դրված էր հաստ քաթանով ծածկված հեծանիվը։ Գիորգին մոտեցավ, վերցրեց ծածկոցը, ծալեց, դրեց աթոռի վրա և թեքվեց դեպի գրասեղանը։ Գրիչն շտապ վազեց թղթի վրայով.

«Շաքրո, չվախենաս և չբարկանաս, ես հեծանիվով գնում եմ Գորի, մեր հիվանդ ուսուցչի համար դեղ բերելու, դպրոց գալ չկարողացա, շատ եմ շտապում։ Գիորգի»։

Նա իր պայուսակը դրեց Շաքրոյի սեղանի վրա, դուրս բերեց հեծանիվը, բակի դուռը փակեց և ճանապարհ ընկավ։

Հեծանիվը թռչկոտում էր խորդուբորդ ճանապարհի վրա, բայց Գիորգին ուշադրություն չէր դարձնում։ Ջորի միջով անցնող նեղ ճանապարհին՝ նրա վրա շներ հարձակվեցին։ Գիորգին ուշադրություն չդարձրեց և աչքերը սևեռած դեպի հեռուները, շտապեց դուրս գալ խճուղի։ Վերջապես հասավ խճուղուն։ Հարթ ճանապարհի վրա Գիորգին ոտքերին ուժ տալով առաջ սլացավ։ Կես ժամ անց, նա քրտնքից ամբողջովին թրջվել էր։ Սակայն մոտ էր Գորին. մշուշի մեջ արդեն նշմարվում էին բերդի աշտարակները, պարիսպն ու նրանց ետևում փռված կապույտ բարձրաբերձ լեռնաշղթան։



Ահա Գորին։ Գիորգին սլացավ վայրէջքով և դուրս եկավ լայն սալահատակած փողոց՝ Ստալինի տնակի մոտ։

Այն օրը, կարծես աշխարհի բոլոր ծայրերից, բազմաթիվ մարդիկ էին եկել Գորի՝ Ստալինի տնակը տեսնելու։ Լայն պողոտայում ծովի նման ծփում էր ժողովուրդը։ Գիորգին հեծանիվից իջավ և բազմության միջով քայլեց առաջ։ Առաջ շարժվելը դժվար էր։ Գիորգին հետաքրքրությամբ դիտում էր բազմության մեջ երևացող ուզբեկին, չինա-

ցուն և էսկիմոսին: Նա այս մարդկանց պատկերներից էր ճանաչում: Տեսել էր գրքերում, բայց այժմ նրանց մոտիկից դիտելու բուռն ցանկությամբ լցված, նայում էր հափրշտակված, բայց և առաջ էր գնում: Միայն թե հիմա արագ գնալն անհնար էր:

Ժողովրդի խուռն բազմությունը փոքր ինչ ճեղքվեց: Գիորգին դուրս եկավ նրա միջից, նստեց հեծանիվը, և երեք րոպեից հետո կանգ առավ դեղատան առաջ: Նա հեծանիվից թռավ, մեքենան հենեց մուտքի պատին ու ներս մտավ: Դեղորայքի հոտը սթափեցրեց նրան: Նա ձեռքը շեշտակիորեն խրելով խիտ մազերի մեջ սարսափահար շշնջաց.

— Վա՜յ, իմ տետրը՜... պայուսակս մընաց. դեղի անունը նրա մեջ էր գրված,— շփոթված տղան ձեռքը տարավ ծոցը.— դրամն այստեղ է, իմ տետրերի դրամը... բայց ոչի՜նչ, դեղի անունը հիշում եմ... Ընկերոջս ազգանվանը նըման էր... Հա՛, հիշեցի,—հուզմունքը մեղմելով, շշնջաց Գիորգին և սեղանի ետևը կանգնած դեղագործին դիմելով՝ համարձակ հարցրեց.

— Քեռի՛, սուլինաուրի եմ ուզում, ունեք չէ՞, սուլինաուրի:

Դեղագործը գլուխը կախ գրում էր: Տղայի աղերսական ձայնը լսելով գլուխը բարձրացրեց և ակնոցների վերևից նայեց նրան: Ապա հանդարտ հարցրեց.

— Ի՞նչ...

— Սուլինաուրի, քեռի՛, սուլինաուրի:

— Այդ ի՞նչ բան է, տղա՛:

— Դեղ է. իմ ուսուցիչը ծանր հիվանդ է և շատ հարկավոր է օգնության հասնել:

— Սուլինաուրի՞, այդպիսի դեղ ես չգիտեմ: Երևի դու ուրիշ բան ես ուզում, խառնում ես,—ասաց դեղագործը և ձեռքը մեկնեց դեպի գրիչը:

Սրտնեղած տղայի հոգին տակն ու վրա եղավ:

— Դեղ է, ինչպե՞ս չէ, դեղ է, թոքերի բորբոքմանն ասում են, շատ է օգնում: Բըժիշկն այդպես ասաց: Մեր գյուղում այդ



դեղը չի ճարվում, ես էլ հեծանիվով շտապ եկա, որ էլի շուտ վերադառնամ: Քեռի՜, ցավդ տանեմ, շո՜ւտ, թե չէ...—արտասվալից աղերսեց տղան...

— Հա՞… ոչ թե սուլինաուրի, փոքրի՛կ, դու երևի սուլֆիդին ես ուզում, չէ՞։

Գիորգին ակամայից ծիծաղեց։

— Հա՛, այդպես է, ես գրել էի տետրիս մեջ, բայց շտապեցի ու տանը թողեցի։ Սուլինաուրին իմ ընկերն է, նրա անունը Ցիզո է, անվան փոխարեն՝ ազգանունը հիշեցի և Սուլինաուրի ասացի,—անհարմար վիճակից դուրս գալու համար ասաց Գիորգին։

— Այո, բայց դեղը առանց դեղատոմսի չի տրվում, ունե՞ս,—հարցրեց դեղագործը։

Գիորգին սարսափեց, սպրդնեց, աչքերը լցվեցին արցունքով. ասես խեղդվում էր։

— Քեռի՜, քե՜զ մատաղ, հապա ի՞նչ անեմ, մի կե՜րպ…

— Չէ՛, որդի՛, իզուր տեղը ժամանակ մի՛ կորցնի,—հանդարտ տոնով ասաց դեղագործը.—մենք առանց դեղատոմսի սուլֆիդին բաց թողնելու իրավունք չունենք. ի՞նչ կարող եմ անել։

Գիորգու վրա կարծես սառը ջուր մաղեցին։ Նա դարձավ դեպի դուռը, նստեց հեծանիվն ու քշեց։

— Ա՜խ, ինչ վատ եղավ։ Էլ ո՞ւր գնամ, ո՞ւմ խնդրեմ։ Ի՞նչ հիմարն եմ, կարծեցի առանց դեղատոմսի կտան և…—բարկանում էր Գիորգին ինքն իր վրա և գլուխը կախած այս ու այն կողմն էր պտտում հեծանիվի ղեկը։

— Ա՜յ տղա, Գիորգի՜, դո՞ւ ես,—հանկարծ փողոցի անկյունում լսվեց մի ուրախ ձայն։ Գիորգին կանգ առավ ու թռավ հեծանիվից։

— Ի՞նչ է պատահել, ինչո՞ւ ես այդքան հուզված, շփոթված,— երկրորդ անգամ հարցրեց տասնչորս տարեկան մի տղա և կանգնեց Գիորգու առաջ։

— Բարև, Նիկո՛,—հազիվ լսելի ձայնով շշնջաց Գիորգին և մեկնեց ձեռքը։

— Քիթդ ինչո՞ւ ես կախել, ինչի՞ համար ես եկել գյուղից։

Գիորգին դառն ժպտաց։

— Մեր մայրենի լեզվի ուսուցչին հո ճանաչո՞ւմ ես… ծանր հիվանդ է. թոքերի բորբոքում ունի։ Ասում են միայն սուլֆիդինը կարող է փրկել։ Երբ լսեցի, գլխապատառ թռա Գորի, բայց արի ու տես, որ առանց դեղատոմսի չեն տալիս։

— Մի՛ անհանգստանա, մենք ունենք, կտամ՝ կտանես։

— Վա՛յ, մատաղ քեզ, Նիկո՛, օգնի՜ր։

— Իհարկե կօգնեմ, հայրս էլ հիվանդ էր և եթե այդ դեղը չլիներ՝ ձեռքից գնալու էր։ Նրա դեղից մի քանի հատ մնացել է։

— Միայն թե շուտ բերես, այ արժերն էլ…—Տղան ձեռքը տարավ գրպանը։

— Ի՞նչ ես անում, Գիորգի՛, թող մարդն առողջանա, փողն ինչի՞ս է պետք,—նեղացած գոչեց Նիկոն և շտապեց տուն։

Գիորգու աչքերը փայլեցին։ Երբ մի քիչ հետո ընկերը դեղը տվեց, Գիորգին գրեց ծոցը, փաթաթվեց ու համբուրեց նրան։

— Քո լավությունը չեմ մոռանա… Ներիր ինձ, շատ եմ շտապում,—ոգևորված ասաց Գիորգին, թռավ հեծանիվի վրա ու սլացավ։



Թևերը պարզած արծվի պես էր սլանում Գիորգին։ Ուրախությունից հոգնածությունը մոռացել էր։ Ամառային զովը գուրգուրում էր Գիորգու դեմքը։ Սարերն ու դաշտերը կարծես երգում էին, ծառերի կատարները սրտահույզ նվագում, ձայնակցելով Գիորգու անսահման երջանկությանը։ Նա զգում էր, որ սիրելի ուսուցիչը մահից փրկվելու է։

Դեռ արևը մայր չէր մտել, որ տղան գյուղ հասավ։ Նա անցավ գյուղամիջի ճամփով, թեքվեց աջ ու երբ երևացին ավերակ բերդի կողքին ծվարած տան պատուհանները, սուր փշի նման մի բան ծակեց նրա սիրտը։ Ուսուցչի տան առաջ մի խումբ աշակերտներ էին խռնված։ Իսկ մեկը դռան մոտից վազեց դեպի պատշգամբ և մտավ ներս։

— Վայ թե ուշացրի,—սրտնեղած շշնջաց Գիորգին։ Նրա ոտքերը թուլացան, սակայն շարունակում էր հուզված մոլեգնությամբ շարժվել։ Գիորգին ճանաչեց իր դասընկեր աղջիկներին։ Նրանցից մեկը թաշկինակը տարավ աչքերին։

— Վա՜յ իմ սիրելի ուսուցիչ…—դառնագին հառաչեց Գիորգին և ավելի արագացրեց հեծանիվի թափը։

— Գիորգի՜ն, Գիորգին գալիս է՜…—լսեց նա հուզված պատանիների աղաղակները։ Նրանցից միջից դուրս եկավ մի տղա և վազեց դեպի Գիորգին։

— Բերի՞ր,—շփոթված ձայնով հարցրեց Նաքրոն և հեծանիվը վերցրեց Գիորգու ձեռքից:

— Ի՞նչ է պատահել, ինչո՞ւ եք հավաքվել, ի՞նչպես է նա, հը՞,—սրտատրոփ ու հևիհև հարցրեց Գիորգին ընկերոջը, աչքերը սևեռելով նրա դեմքին:



— Ծանր վիճակի մեջ է, բայց որ հասցըրիր, կարող է փրկվել:

Գիորգին թեթևություն զգալով, հառաչեց և լսելով ընկերների հարցերը, վազեց բակով և վայրկենապես բարձրացավ պատշգամբ: Այստեղ հավաքված ուսուցիչները տխուր ու գլխահակ զրուցում էին: Հենց այդ միջոցին դուռը բացվեց և երևաց բժիշկը: Գիորգին մոտեցավ նրան.

— Հարգելի ուսուցի՜չ... բըժիշկ... բժի՜շկ, սուլֆիդինը բերեցի,—դողդոջուն ձայնով ասաց Գիորգին և դեղափոշու տուփը դրեց նրա ձեռքը:

— Ա՛յ, քաջ տղա՜... քաջ տըղա,—բացականչեց բժիշկն ու իսկույն ներս մտավ սենյակ:



Մթնեց: Լիալուսինն արդեն ծագել էր և արծաթե փոշի էր մաղում գյուղի վրա: Հիվանդ ուսուցչի տան մոտ, ավերակ բերդի պատի տակ քչքչացող աղբյուրի մոտ նստել էր Գիորգին, իր մի խումբ դասընկերների հետ: Նրանք մեծ ոգևորությամբ, քաղցրաձայն երգում էին:

Նրանց մեջ իրեն ամենից երջանիկ էր զգում Գիորգին:

Վրաց. թարգմ. Վ. ԱՍՐՅԱՆ

---

Ռ. ԿԱՍՊՅԱՆ

# ՄԵՐ ԴՊՐՈՑԸ

Տե՛ս, կանգնած է դպրոցը մեր
Լայն, գեղեցիկ պարտեզում.
Թեև երրորդ տարին է դեռ,
Որ ես դպրոց եմ գնում,
Բայց այնքա՜ն բան եմ սովորել...
Վարժ կարդում եմ ես գրքեր,
Կարող եմ և նամակ գրել,
Լուծել դժվար խնդիրներ:

Արտասանում եմ համարձակ,
Միշտ, երբ լինում է հանդես...
Նայե՛ք, ինչե՜ր եմ նկարում,
Սա դպրոց է, սա՝ պարտեզ,
Սա էլ ինձ պես աշակերտ է,
Նայե՛ք, տուն է շտապում,
Երևի «հինգ» է ստացել,
Այնպես ուրախ է ժպտում:

# Կորեացի փոքրիկ Դյուն

ԱՐՏԱՇԵՍ ՊՈՂՈՍՅԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

1.

Գրկել էի մի անգամ
Կորեացի մի մանկան,
Որ խաղում էր, վազվզում
Քաղաքի մի փողոցում:
Իր ընկերները խնդուն
Նրան ասում էին՝ Դյու:
Օ՜, ինչքա՜ն էր նա խելոք,
Ուրախ, կայտառ ու անհոգ:
Երբ ժպտում էր փոքրիկ Դյուն,
Հիշում էի ես իսկույն
Իմ մանկիկին հարազատ,
Որ թռչկոտում է ազատ:
Ու հրճվում էր իմ հոգին,
Որ հեռավոր մանկիկին
Տված կյանքի վառ գարուն՝
Մենք կդառնանք նորից տուն...
Ու մենք դարձանք հայրենի
Երկիրը մեր սիրելի,
Իսկ նա մնաց իր ազատ
Հայրենիքում հարազատ:



2.

Մի անգամ էլ փոքրիկ Դյուն,
Երբ խաղում է փողոցում՝
Փխենյանի վերևում
Ինքնաթիռն է երևում:
Ու փախչում են դեպի ցած
Մանուկները սարսափած.
Մտնում են մի փլատակ,
Մի թաքստոց անվտանգ,
Մինչև կորչի թշնամու
Ինքնաթիռը ահարկու:
Բայց կուտակված ամպի մեջ
Նա դեռ շրջում է անվերջ,
Ցած է նետում այս անգամ
«Խաղալիքներ» մանկական:
Օ՜, մահաբեր սավառնակ...
Եվ գունազարդ մի նավակ,
Որ նետել էր այդ ժամին
Մանուկների թշնամին,
Բարձրացնում է փոքրիկ Դյուն...
Բայց ահավոր մի պայթյուն
Տարածվում է, ու հանկարծ
Դյուն ճչում է, ընկնում ցած:
Եվ նա վերջին իր շնչում
Ընկերներին է դիմում.
— Հեռո՛ւ, հեռո՛ւ մնացեք,
Շուտ այստեղից գնացեք...
Խաղալիք չէ սա մանկան,
Այլ ահավոր մի ական...
Բայց վախկոտ չեն նրանք, ո՛չ,
Եվ չեն լքի ընկերոջ,
Ու տղերքը մոտ գալիս,
Նրան գրկում են, լալիս.
Դյուն աչքերը չի բացում...
Սավառնակը թևածում
Դեռ նետում է դեպի վար
«Խաղալիքներ» անհամար...
Ու սրտիս մեջ որպես վիշտ՝
Ինձ այս դեպքն է տանջում միշտ.

Չէ՞ որ նրան մի օր ես
Գրկել էի իր հոր պես,



Գրկել էի հենց այնտեղ,
Ուր «խաղալիքը» պայթեց

Եվ սպանեց նենգաբար
Այն մանկիկին խանդավառ:

3.

Սակայն հրեշն արյունոտ
Իր վախճանին մոտ է, մոտ:
Նա դողում է մարդկության
Ձայնից հզոր, հաղթական:
Մենք չենք թողնի թշնամուն
Որ մահ փռի աշխարհում,
Չէ՞ որ մեզ հետ է արև
Առաջնորդը հանճարեղ:
Նա փրկություն կբերի
Մանուկներին աշխարհի,
Որ թռչկոտեն ու խաղան
Միշտ երջանիկ և խաղաղ:

*Ա. ԿՈՆՈՆՈՎ*

## ՄԻ ԴԵՊՔ ՎՅԱԶՈՎԿԱՅՈՒՄ

*Նկ. Ա.Ն. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

*Վյազովկա գյուղի փոշոտ փողոցում հինգ հեծյալ երևացին: Առջևից, գեղեցիկ շիկակարմիր ձին նստած գնում էր զինվորական համազգեստով մի մարդ:*

*Գյուղի տղաներն իսկույն ճանաչեցին նրան:*

*— Չապա՜յը... Չապայը եկա՜վ...*

*Բակի բարձր դարբասի մոտ հեծյալները կանգ առան: Դարբասից դուրս վազեց յոթ տարեկան մի տղա:*

*— Քեռի՛,— բացագանչեց նա,— մեզ մոտ տոնավաճառ է:*

*— Տեսա՛, որդիս,— պատասխանեց Չապաևն ու թամբից ցատկեց գետին:*

*Նա բարձրահասակ մարդ չէր, բայց վայելչակազմ էր: Կանաչ գույնի համազգեստը, որը ձգված էր կաշվե փոկերի տակ, լավ էր նստել նրա վրա: Գոտու աջ կողմից կախված էր ատրճանակը, իսկ ձախից՝ արծաթապատ թուրը:*

*Նա ձեռքը տարավ դեպի բեղերը ու պարզ, երկնագույն աչքերը հառեց գյուղական հրապարակին: Հրապարակում խոտով բարձած սայլեր էին կանգնած: Աղջիկները տոնական վառ զգեստներ էին հագել ու թևանցուկ արած զբոսնում էին: Հյուր եկած բրուտագործը բարձրաձայն գովում էր իր ապրանքը: Հարմոնը մի ուրախ պարերգ էր նվագում:*

*—Ի՞նչ կա որ, գնանք խրճիթ, Բուբենեց՛,— ասաց Չապաևը: Հետո դառնալով դեպի ամենաերիտասարդ հեծյալը կարգադրեց.—Պետյա՛, ձիերը թող բակում:*

*Չորս հեծյալ մտան խրճիթ, իսկ հինգերորդը՝ ձիերի սանձից բռնած գնաց բակը:*

*Խրճիթ մտնելով Չապաևը սեղանի վրայից վերցրեց կավե կճուճը, բաժակի մեջ կաթ լցրեց և արագ խմեց: Հետո կճուճն իր ուղեկիցներին պարզեց:*

*Փոքրիկ տղաները սեղանին կպած, նայում էին հյուրերին: Խրճիթի շեմքին հայտնըվեց գանգուր մորուքով մի թիկնեղ ծերունի:*

*— Բարև, Վասիլի՛,— ասաց նա,— դեռ կռվո՞ւմ ես:*

Չապաևը քմծիծաղ տալով պատասխանեց.

— Կովում եմ։

Ծերունին ձեռք տվեց բոլորին և նստեց երկար նստարանի վրա։

— Ես տոնավաճառում էի, երբ դու գյուղում… փոշի բարձրացրիր… Ես, որդի՛ս, քեզ հեռվից ճանաչեցի։

— Տոնավաճառն ինչպե՞ս է հիմա, մի բան ծախեցի՞ր…,— հարցրեց ծերունու հյուրերից մեկը, որի անունը Բուբեննեց էր։

— Դե՜, ի՞նչ ասեմ… Ոչ մի ծանոթի չհանդիպեցի։ Մեծ մասը հեռու տեղերից եկած անծանոթներ են…

Բուբեննեցը հոնքերը կիտեց։

— Նրանք ինչո՞ւ են Վյազովկա գալիս։

Ասյա շուռ եկավ Չապաևի կողմն ու ասաց.

— Վասիլի Իվանովիչ, գավառում անհանգստություն է տիրում. չգա՞ն լցվեն անկոչ հյուրերը՝ սպիտակները։ Մենք ջոկատից իզուր այդքան հեռացանք։

Չապաևը հանգիստ պատասխանեց.

— Միթե՞ ես չեմ կարող իմ տղաներին տեսնել։ Մինչև առավոտ հյուր կմնանք ու հետո էլի կարշավենք։



Նա մոտեցավ լուսամուտին և դուրս նայեց։ Փողոցով դանդաղ շարժվում էին խոտով բարձված սայլերը։ Նրանցից մեկը կանգ առավ դարբասից ոչ հեռու։

— Բուբեննե՛ց, եկ այստեղ,— կանչեց Չապաևը.— խոտով բարձված սայլերն ինձ ինչ-որ դուր չեն գալիս։

Բուբեննեցը պատուհանից դուրս նայեց ու ձեռքն իսկույն տարավ դեպի ատրճանակը։ Չապաևը նույնպես հանեց ատրճանակը և ստուգեց թուրը։ Սայլերից հրացանների փողեր էին դուրս ցցվել և խոտի միջից նայում էին անծանոթ մարդկանց չար դեմքեր։ Չապաևը գոչեց.

— Տղանե՛ր, պառկե՛լ հատակին։

Նա իսկույն բռնեց փոքրիկ տղային և լուսամուտից մի կողմ քաշեց։

Երկու տղան էլ պառկեցին կողք-կողքի։ Չապաևն արագ շուռ եկավ դեպի Բուբեննեցը.

— Եթե դրանք իմ գլխի համար են եկե՜լ…,—սկսեց նա, բայց չկարողացավ խոսքն ավարտել։ Հանկարծ փողոցում կրակոցներ լսվեցին։ Հարևան սենյակում փշրվեցին լուսամուտի ապակիներն ու թափվեցին հատակին։

— Որտե՞ղ է Պետկան,— բղավեց Չապաևը։

Բայց Պյոտր Իսաևը և ուրիշ երկու մարտիկ ատրճանակները ձեռքերին արդեն պատրաստ կանգնել էին խրճիթի շեմքի մոտ։

— Վասիլի՛ Իվանովիչ,— արագ ասաց Պյոտրը,— ձիերի թամբը չեմ վերցրել։ Մեզ միայն մնում է ձիերով ճղել…

— Փորձե՜նք։

Պյոտր Իսաևը, որին բոլորը բարեկամաբար անվանում էին Պետկա, քսաներկու տարեկան տղա էր։ Նա Չապաևի առաջադրանքներն էր կատարում։ Ամենուրեք նրա հետ էր եղել և շատ կռիվներ տեսել։

Նորից սկսեցին որոտալ կրակոցները, հետո մի պահ լռեցին և ինչ-որ խռպոտ ձայն լսվեց.

— Չապա՜յ… դուրս եկ, դո՜ւրս…

Հինգ հեծյալ Չապաևի ու Բուբեննեցի գլխավորությամբ արդեն կանգնել էին բաց պատուհանի ու դռների մոտ, ատրճանակները ձեռքերին։ Հենց որ մեկը չիկահեր գլուխը դարբասից դուրս հանեց, խրճիթի պատուհանից դուրս թռան հարյուրավոր գնդակներ։ Գլուխն անհետացավ։

— Դեպի բա՛կը,— հրամայեց Չապաևը։

Չապաևցիները թռան դեպի բակը, պառկեցին խրճիթի մոտ ու սկսեցին կրակել։ Բակում երևաց նաև Չապաևի հայրը։

— Կանգնիր դարբասի մոտ,— ասաց

նրան Վասիլի Իվանովիչը,— երբ հրաման կլինի՝ դարբասը բաց արա։

Հարձակվողներն այժմ դարբասին չէին մոտենում։ Նրանք հեռվից գոռում էին.

— Դուրս արի, դուրս արի՜...

Քիչ հետո նրանք խռնվեցին սայլերի մոտ և սկսեցին քննել, թե ինչպես ամեն կողմից այրեն խրճիթն ու չապաևցիներին դուրս քշեն այնտեղից։

Այդ ժամանակ Չապաևը կուզեկուզ վազեց ձիու կողմն ու ցատկեց թամբի վրա։ Չապաևին հետևեցին մյուսները։

նստած մի սպա։ Նա թուրն արդեն բարձրացրել էր Չապաևի գլխի վրա։ Վերջինս ճարպկորեն շուռ եկավ. ձին ծառս եղավ։ Չապաևը կրակեց։ Սպան թեքվեց, բռնեց ձիու բաշից, բայց չկարողացավ պահել ու թամբից գլորվեց գետին։

Խփեցին նաև Պյոտրի ձիուն։ Ձին վայր ընկավ և տրորեց նրա ոտքը։ Չապաևը այդ նկատեց։ Նա ցած թռավ ձիուց ու վազեց դեպի Իսաևը, օգնեց նրան ազատելու ոտքը։ Հետո շուռ եկավ Բուբենեցին օգնելու։ Ճիշտ ժամանակն էր։ Բուբենեցին շրջապատել էին



— Դարբասը բաց արա,—ցածր ձայնով հրամայեց Չապաևը և թուրը դուրս քաշեց պատյանից։ Ձախ ձեռքում էլ ատրճանակ էր բռնել։

Դարբասը բացվեց։ Հինգ հեծյալ դուրս թռան փողոց և խուժեցին թշնամու մեջ։ Թշնամիներն այդպիսի հարձակման չէին սպասում։ Օդում փայլատակեցին թրերը։ Լսվեցին աղմուկ, աղաղակ, վիրավորների տնքոց։

Սպիտակ գվարդիականները նահանջեցին։ Նրանք ձգտում էին թաքնվել խոտով բարձված սայլերի ետևում։ Այդ ժամանակ Չապաևի վրա հարձակվեց սպիտակ ձի

թշնամիները։ Նա արդեն կրակել էր բոլոր փամփուշտները և այժմ միայն թրով էր պաշտպանվում։ Նրա ճակատից արյան բարակ շիթ էր հոսում։ Չապաևն աջ ու ձախ թրատում էր, իսկ Պյոտրը կանգնած նրա ետևում, կրակում էր դեպի սպիտակները։

Թշնամին չկարողացավ դիմադրել ու փախավ։ Հինգ հեծյալ նրանց երկար հետապնդեցին, իսկ հետո գյուղ վերադարձան։ Իսաևն առաջինը վազեց դեպի սայլերը և թուրը խրեց խոտի մեջ։ Սուրը դեմ առավ մի կոշտ բանի ու զնգաց։ Մարտիկները սայլից խոտը թափեցին և նրա տակ մի գնդացիր գտան։

Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ

# ՍԵՐԳԵՅ ՕՀԱՆՅԱՆ

Բ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Պատանիները հետաքրքրությամբ շրջապատեցին պատերազմի մասնակից գեներալին, երբ նա սկսեց իր պատմությունը Սովետական Միության Հերոս Սերգեյ Օհանյանի մասին:

— Սերյոժան էլ ձեզ նման մի տղա էր: Նա սովորում էր Թբիլիսիի № 82 հայկական դպրոցում: Նրա հայրը, վագոնավար Մամբրեն, իր տղային սովորեցնում էր լինել աշխատասեր ու ազնիվ:



— Աշխատանքն է բոլոր բարիքների աղբյուրը,— ասում էր հայրը,— ով լավ է աշխատում, նա հայրենիքի պատվավոր, բոլորի կողմից հարգված քաղաքացին է:

Իսկ Սերյոժայի մայրն ասում էր.

— Որդի՛ս, հայրենիքի համար օգտակար մարդ լինելու համար պետք է լավ սովորես, իմանաս մեր ժողովրդի պատմությունը:

Երբ երեկոները Սերյոժան դասերը պատրաստելուց հետո նստում էր բեյի, մայրը՝ Ազնիվը նրա համար պատմում էր դեպքեր հայ ժողովրդի պատմությունից և «Սասունցի Դավիթ» էպոսից: Սերյոժան մոր պատմվածքների ազդեցության տակ հուզվում էր:

Տղան իր գիտելիքները լրացնում էր գրքեր կարդալով: Շուտով նրա փոքրիկ գրադարանը հարստացավ՝ Ֆուրմանովի «Չապաև», Օստրովսկու «Ինչպես էր կոփվում պողպատը», Ֆադեևի «Ջախջախում», Իսահակյանի «Սասմա Մհեր» և այլ գրքերով:

Սերյոժան հավասարապես սիրում էր հայերենն ու ռուսերենը և երկու լեզվով էլ ազատ կարդում էր:

Մի քանի տարի հետո նա ավարտեց միջնակարգ դպրոցը:



Սերյոժան աշխույժ էր ու կենսուրախ: Նա մի մտերիմ ընկեր ուներ՝ Վասիլի Պուզիրյով, որին սիրում էր հարազատի պես:

Մի անգամ, երբ նրանք անցնում էին Պլեխանովի պողոտայով, Հրետանային դպրոցի մոտ Վասիլին ասաց.

— Սերյո՛ժա, ի՜նչ լավ կլիներ, եթե այստեղ սովորեինք:

Սերյոժան ոգևորությամբ արձագանքեց.

— Սիրելի Վասի՛լի, ես երկար եմ մտածել դրա մասին: Ես սիրում եմ ռազմական գործը: Հաճախ պատկերացրել եմ ինձ և քեզ հրանոթի մոտ, թշնամու դեմ կռվելիս ու հաղթելիս...

Որոշ ժամանակից հետո Սերգեյ Օհանյանին ու նրա ընկերոջը կոմերիտական կազմակերպության երաշխավորությամբ ընդունեցին Հրետանային դպրոց: Այստեղ Սերյոժան սովորեց արիություն, տոկունություն: Նա տիրապետեց ռազմական գործին:



Սերյոժան քսան տարեկան էր, երբ սկսվեց Հայրենական Մեծ պատերազմը: Հենց սկզբից Սերյոժայի ավագ եղբայրները՝ Արտավազդն ու Օնիկը մեկնեցին ռազմաճակատ, թշնամու դեմ կռվելու:

1941 թվի հուլիսի 17-ին Սերգեյ Օհանյանը փայլուն կերպով ավարտեց Հրետանային դպրոցը և իր մտերիմ ընկերոջ՝ Վասիլի Պուզիրյովի հետ մեկնեց ռազմաճակատ:

Մարտական մի քանի հաջող գործողություններից հետո հրամանատարությունը լեյտենանտ Սերգեյ Օհանյանին հանձնեց հրետանային մարտկոցի հրամանատարությունը:

Սերգեյ Օհանյանի մարտկոցը մի ինտերնացիոնալ ջոկատ էր: Սերգեյի մարտկոցում կային ռուսներ, ուկրաինացիներ, ադրբեջանցիներ, հայեր: Նրանք բոլորը ապրում էին մի կյանքով ու նպատակով, նույն ատելությամբ ու վրեժով էին լցված թշնամու նկատմամբ: Նրանք բոլորն էլ ջերմորեն սիրում ու հարգում էին իրենց մարտական հրամանատարին ու ընկերոջը:



Մի անգամ Սերգեյ Օհանյանի մարտկոցը պաշտպանում էր Ռոստովից արևմուտք գտնըվող ստրատեգիական շատ կարևոր մի կետ:

Մարտկոցն ամրացել էր մի բարձունքի վրա և թույլ չէր տալիս, որ թշնամին առաջ շարժվի: Հետախուզությունը լեյտենանտ Օհանյանին հայտնեց, որ ֆաշիստական հիսուն տանկ շարժվում են նրանց ուղղությամբ:

Թշնամու այդ գերազանց ուժի դեմ Օհանյանը հակադրում է 16 կրակային կետ: 16 և 50: Ուժերի այս փոխհարաբերությունը լարված դրություն է ստեղծում: Հրետանավորները գրավում են իրենց տեղերը և սպասում հրամանատար Օհանյանի վճռին: Բոլորը ըզգում են դրության լրջությունը: Տանկերը խելահեղ աղմուկով մոտենում են: Նրանք ուզում են ոչնչացնել Սերգեյ Օհանյանի մարտկոցը և ճանապարհ բացել դեպի Ռոստով: Սակայն Սերգեյ Օհանյանը անհողդողդ է իր դիրքում, վստահ ու սառնասիրտ: Այս տրամադրությունն հաղորդվում է նաև նրա ընկերներին:

Սերգեյը հիշում է իր և իր ընկերների երդումը ծնողներին, հիշում է իր ընկերների երդումը Կարմիր դրոշը ստանալիս... Հնչում է Օհանյանի մարտական հրամանը.

— Հանո՛ւն Հայրենիքի, Կրա՛կ...

Որոտում է առաջին համազարկը, ապա երկրորդը: Թշնամու ջարդված բրբուռով տանկը կանգ է առնում, բոցավառվում է՝ երկրորդը: Առաջին հաջողությունից գոտեպնդված հրետանավորները շարունակում են կռիվը: Գերմանական տանկերից երկուսը փորձում են շրջանցել, բայց շարքից դուրս են գալիս:

Վիրավոր ընկնում է խիզախ հրետանավորներից մեկը՝ Վելիևը: Ընկերոջ արյունը բորբոքում է կռվողներին: Գերմանական հինգ տանկ շղթա կազմած սրընթաց գրոհում են դեպի մարտկոցը: Սակայն Օհանյանի հերոս մարտիկները դիպուկ կրակով խափանում են նաև սրանց դիտավորությունը:

Կռիվը անհավասար է: Ահա ընկնում են Շահվալիևը, Աբրամենկոն և Ղուլյանը. բայց արկերի տարափը շարունակում է տեղալ թշնամու տանկերի վրա: Գերմանական տանկերին չի հաջողվում ընկճել հայրենասերների կամքը:

Ֆաշիստական տասնհինգ տանկ կրկին շարժվում են դեպի բլուրը՝ Օհանյանի մարտկոցը: Հերոսների շարքերը նոսրանում են: Ընկնում են Վելիխանովը, Հարությունյանը: Տանկերը 500 մետր են միայն հեռու: Սերգեյ Օհանյանը և՛ նշանառու է, և՛ արկ մատուցող: Տասը ռոպեում Սերգեյը շարքից հանում է երեք մեքենա: Նա ընկերների հետ միասին կռվում է Դավթի նման:

Նենգ թշնամին կրկնակի կորուստ կրելով դեռ առաջ է նետվում: Պայթում է արկը. ընկնում է սիրելի հրամանատարը...

«Կռվել մինչև վերջին շունչը», այս է կենդանի մնացած հերոսների հաստատ վճիռը: Կռիվն ավելի է մոլեգնում: Բոցավառվում են թշնամու տանկերը, բայց ահա ընկնում են նաև Լազարևն ու Պուզիրյովը:

Կենդանի է մնում միայն Ֆյոդոր Բալես-

տան: Ֆյոդորը մի պահ նայում է զոհված ընկերների դիակներին, դիմացը ծխացող գորշ մեքենաներին: Մնացել է թշնամու մի տանկ, բայց օգնող ուժերը դեռ չեն երևում...

— Ես սրան թույլ չեմ տա հասնելու բըլուրին, պղծելու իմ ընկերների դիակները...

Նա վճռական շարժումով հակատանկային նռնակները կապում է մեջքին և սողում է դեպի իրեն մոտեցող վերջին տանկը: Նռնակների պայթյունից բոցավառվում է նաև վերջին տանկը...

— Իսկ ո՞վ տեսավ այդ, չէ՞ որ բոլորը զոհվեցին,— խորը լռությունից հետո հարցրին պիոներները:

— Մարտկոցի միակ ծանր վիրավոր Վելիևը: Նա այդ դեպքի մասին պատմում է մեր օժանդակ ուժերի հրամանատարին՝ իմ ընկերոջը: Ես հետո թերթերում կարդացի Սովետական կառավարության բարձր գնահատականը, բազմաթիվ նյութեր Սերգեյ Օհանյանի ու նրա անվեհեր ընկերների մասին: 1943 թվին, երբ սովետական զորքերը ամբողջ ճակատով գրոհում էին անարգ թըշնամու դեմ, ես կարդացի ՍՍՌՄ Գերագույն Սովետի Հրամանագիրը Սերգեյ Օհանյանին, Վասիլի Պուզիրյովին և Ֆյոդոր Բալեստային Սովետական Միության Հերոսի բարձր կոչում շնորհելու մասին:

Գեներալը ծխախոտը վառեց:

Պիոներները տխուր նայեցին պատերազմի վետերանի դեմքին և կարծես մտքում երդվում էին լինել Սերգեյ Օհանյանի ու նրա ընկերների նման ազնիվ ու հայրենասեր հերոսներ:

---

## ՁՅՈՒՆԸ

Թափվի՛ր դու ձյուն փաթիլ-փաթիլ,
Թափվիր արձակ մեր դաշտերին.
Թո՛ղ հողը մեր անհագ ծծի,
Թո՛ղ բերքառատ լինի տարին:

Իջի՛ր, նստի՛ր փաթիլ, փաթիլ
Անբիծ փաթիլ սպիտակ ձյան.
Թող քո ամեն, ամեն փաթիլ
Լինի մի հասկ առատության:

Թող որ պարարտ հողը ծծի,
Արտերը մեր ջուր ստանան,
Ու երբ կանաչ գարուն բացվի
Աճեն արագ ու բարձրանան:

Թո՛ղ մեր հացը առատ լինի,
Անուշ հացը սովետական,
Թո՛ղ հացով էլ անպարտ լինի
Մեծ երկիրը խաղաղության:

ԻՍՐԱՅԵԼ ՋԱՆԴԼՅԱՆ

(Շամշադին. Այգեձոր)

---

# Մենք կռիվ չենք ուզում



Բ. ՎՐԵՊՈՆՏ — Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*(Ավստրալիական բանաստեղծ)*

Ո՞վ է ուզում խաղաղություն,—
Ե՛վ ես, և՛ նա, և՛ մեկ էլ դու՝

Ամեն գույնի մարդ հասարակ,
Ով ապրում է աշխատանքով:

Ո՞վ է ուզում խաղաղություն,—
Ամեն մի մարդ, ամեն մի տուն՝

Ում օրն անցնում է հոգսի մեջ,
Աշխատողի ազնիվ կյանքով:

Ո՞վ չի ուզում խաղաղություն,—
Ամեն գազան, գիշատիչ բու,

Ով որ փող է ուզում դիզել
Մարդկանց արյամբ, մարդկանց
մահով:

Ամեն տեսակ չար կենդանի,
Ծույլ անասուն երկոտանի,

Ով ուզում է մարդկանց հաշվին
Ապրել անհոգ ու ապահով:

Ո՞վ է ուզում խաղաղություն,—
Ե՛վ ես, և՛ նա, և՛ մեկ էլ դու՝

Արդար, ազնիվ, աշխատասեր
Որքան մարդ կա հողագնդում:

Բոլոր մեծ ու փոքր ազգերի
Ու ցեղերի լեզուներով,

Մենք ասում ենք պատերազմին՝

— Ո՛չ ես, ո՛չ նա, և ո՛չ էլ դու՝
Մենք բույլ չենք տա երբեք, երբեք:
Ամեն գույնի ազնիվ մարդիկ,
Ամուր բռնենք մենք իրար ձեռք.
Հանո՞ւն կյանքի, խաղաղության,
Եվ չի կարող կռիվը նենգ
Կտրել մեր մեծ, ամուր շղթան:

*Թարգմ. Մ. ՄԱՐԳԱՐՅԱՆ*





Գ. ՍԵՎՈՒՆՑ

Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

## ՃԱՆԱՊԱՐՀԸ

Մենք Գորիս գնացինք Ղափանի կողմից։ Շատ հետաքրքիր ու գրավիչ ճանապարհ է դա։

Ղափանից դուրս գալուց հետո ավտոն անվերջ վեր է ելնում, վե՜ր ու վեր։ Դեմդ երևում է մի սար, որի ստորոտից մինչև գագաթը ձգված է ժապավենի նման ճանապարհը։ Մտածում ես՝ ահա կհասնենք այն սարի գագաթին և այլևս վերելք չի լինի։ Բայց այդտեղ հորիզոնը փակում են նոր, այս անգամ արդեն անտառապատ ու վիթխարի սարեր։

Ճանապարհը գնում, մտնում է դարավոր ու խիտ անտառի մեջ։ Ի՜նչ կենդանիներ ասես, որ այդ անտառում չկան. էլ արջեր, էլ վարազներ, էլ եղնիկներ, քարայծեր...

Մեզ տանող շոֆեր Նշանյանն անտառի ամենախիտ տեղը ձեռքով ցույց տվեց մի կաղնի և ասաց.

— Անցյալ անգամ այստեղ մի արջ դուրս եկավ մեքենայի առաջ։ Մեծ, սև արջ էր։ Կանգնեց ճանապարհի մեջտեղը և զարմացած նայեց ավտոյի լույսերին։ Ձեռքիս հրացան չկար։ Կարծում էի լույսից շլացած կընկնի ավտոյի տակ։ Բայց հենց որ մոտեցա, իրեն նետեց թփերի մեջ...

Մեզ հետ գնացող երիտասարդը մի ուրիշ դեպք պատմեց.

— Այս մոտ գյուղից մի կին ամառը գնում է անտառը աշխատանքի և այնտեղ հանկարծ գտնում է եղնիկի երկու փոքրիկ ձագ։ Երկուսին էլ վերցնում է, տուն բերում։ Մեկը մի շաբաթ չի ապրում, մեռնում է, իսկ մյուսն այժմ մեծացել է, դարձել ոչխարի չափ. բայց փոքր երեխայի պես այդ կնոջից մի քայլ չի հեռանում։ Ուր էլ գնում է այդ կինը՝ եղնիկը նրա ետևից...

Այո, կենդանիներով ու թռչուններով հարուստ են այդ անտառները, շա՜տ են հարուստ։

Բայց ահա հանկարծ երևաց անտառի ծայրը։ Բարձրաբերձ մի սարի գագաթին կանգ առնելով, շոֆերն ասաց.

— Սա էլ՝ Թասը։

Մեր առջև բացվեց մի վիթխարի և առաջին պահ անհատակ թվացող ձոր։ Թաս անվանում են սարը, իսկ ճանապարհը զիգզագներով իջնում է մինչև ձորի հատակը։ Այնտեղ՝ ձորի հատակում, ժայռերի մեջ նեղված, հոսում է անհանգիստ ու ձկնառատ մի գետ՝ Որոտանը։

Բայց մեր կանգնած տեղը՝ Թասի գագաթն այնքա՜ն բարձր էր և մեր առաջ փռված անդունդն այնքա՜ն խոր, որ գետը տեսնել չէինք կարող։

Գետի մյուս ափից ելնող բարձր ժայռերի վրայից մենք տեսնում էինք հեռավոր սարերի կատարները։ Պարզ երևում էր նաև Գորիսի դիմաց գտնվող Լաստին խութ կոչված կոնաձև սարի կատարը, ուր գիշերն էլեկտրական լամպերից պատրաստած մի հնգաթև աստղ է վառվում և երևում տասնյակ կիլոմետր հեռավորության վրա։

Ամեն քայլափոխում խոր անդունդը գլորվելուց զգուշանալով, մեր ավտոն իջավ ձորը, անցավ Որոտանի կապտավուն ջրերի վրայով ձգված կամուրջը և նորից սկսեց մագլցել դեպի վեր։

Կարծում էի վերջին ձորն ենք անցնում, վերջին սարը բարձրանում։ Բայց ահա նորից, երբ հասանք ամենաբարձր կետին, մեր առաջ բացվեց մի նոր ժայռաշխարհ և նույնքան խոր մի ձոր, որի անդունդը նույնպես չէր երևում։ Բայց այդ ժայռերի ստորոտներում փռված էին գեղեցիկ այգիներ՝ Քարահունջ գյուղի մրգաշատ այգիները, ուր աճում են անուշահամ տանձ ու խնձոր, կեռաս, թութ, հոն... Ո՞րը թվես։

Ժայռերին թիկնած այգիների արանքով հոսում է նույնպես զուլալ, արագահոս մի գետ՝ Վարարակը։ Ճանապարհը ձգվում է ձորի մի լանջով և վեր է բարձրանում դեպի հեռվում երևացող սարերը։

Ահա այսպիսի լեռնաշխարհում է գտնվում մեր ռեսպուբլիկայի ամենագեղեցիկ քաղաքներից մեկը՝ Գորիսը։ Երբ Սիսիանից, կամ Շուշուց ես գնում, քաղաքը միանգամից է երևում, որովհետև շրջապատի բարձր սարերի համեմատությամբ այն ընկած է մոտ երեք հարյուր մետր խորություն ունեցող հարթ ու ընդարձակ մի հովտում։

Իսկ մենք գնում էինք ձորն ի վեր, ուստի, երբ մեր ավտոն կանգ առավ կենտրոնական հրապարակում, նոր միայն տեսանք, թե ինչքան գեղեցիկ է Գորիսը։

## ՔԱՂԱՔՆ ՈՒ ՆՐԱ ԲԱՐԻՔՆԵՐԸ

Գորիսի փողոցներն ուղիղ են, քանոնի գծի պես ուղիղ ու լայն, ասֆալտապատ մայթերով։ Մեկ, երկհարկանի գեղեցիկ տները կառուցված են տեղական պողպատագույն, լավ հղկված որձաքարից։

Ձևավորված արագությամբ քաղաքն ընդարձակվում է։ Վերջին երեք տարվա ընթացքում երկու թաղամաս է ավելացել. մեկը՝ Սարալանջի, իսկ մյուսը՝ Տախտակների թաղամասը, որ գտնվում է Վարարակ գետի ձախ ափին։



Մարքսի փողոցը Գորիսում։

Գորիսցիները կանաչի ու ծաղկի սիրահարներ են։ Համարյա յուրաքանչյուր տուն իր այգին ունի։ Քաղաքի կենտրոնը զարդարված է հրաշալի, ծաղկառատ զբոսայգիով, իսկ շրջապատում տնկվել է մեկ միլիոն ծառ։

Գարնանն ու ամռանը քաղաքը ծայրից ծայր թաղվում է ծաղկի ու կանաչի մեջ։ Ծաղկում են խնձորենիները, տանձենիները, կեռասենիները, բալենիները և Գորիսը դարձնում վիթխարի մի ծաղկանոց։

Օդում անվերջ տզզում են մեղրաճանճերը, հեռու տեղերից թռչում գալիս են անթիվ, անհամար ծիծեռնակներ, սարյակներ, արագիլներ, կկուներ, իսկ տեղական ճնճղուկները, աղավնիները, կաչաղակները նոր ձագեր են հանում և օդը լցվում է դրանց ճռվողյունով, կեղգեղանքով... Ապա հասունանում է միրգը։ Այգիներում խնձորենիներն ու տանձենիները հյութալի մրգի ծանրությունից կորանում են գետին։

Անցյալ տարի աշնան վերջին Գորիսում կազմակերպվել էր գյուղատնտեսական ցուցահանդես։ Դա, ավելի շուտ, ուրախ մի տոն էր։ Շրջանի բոլոր գյուղերից քաղաք էին բերել ամեն տեսակի բարիք՝ հացահատիկներ, դրանցից թխած գաթաներ, բաղարջհաց, պանրի մոթալներ, կարագ ու մեղր և տարբեր մրգեր։ Իսկ քաղաքի ամենամեծ հրապարակը լիքն էր ցեղական կենդանիներով։ Շրջանի գյուղերից բերել էին ցուցադրելու արագավազ, կրակոտ նժույգներ, ցեղական կովեր, ոչխարներ, խոզեր...

Գորիսի «Ավանգարդ» կոլխոզը բերել էր ցուցադրելու մի ոչխար՝ իր տասնհինգ սերունդով։ Ցուցահանդեսում կային նաև տրակտորներ, կոմբայններ... Մի խոսքով՝ շատ բան կար դիտելու։

Քիչ հետաքրքրական չէին նաև Գորիսի միչուրինյան տանձը, խնձորը, սալորը...

Գորիսի մոտ կա պետական մի տնկարան, ուր աճեցնում են երեսուն տեսակի հնդավորներ՝ տանձ, խնձոր և կորիզավորներ՝ բալ, կեռաս, սալոր...

Միայն վերջին երեք տարվա ընթացքում տնկարանը շրջանի և ռեսպուբլիկայի լեռնային գյուղերին տվել է հարյուր քառասուն հազար խնձորի, տանձի, կեռասի, սալորի, ելակի, հաղարջի տնկիներ։ Դրանցից միայն խնձորենիները քսան տեսակի են։ Այժմ ցուցահանդես էին բերել «Պեպին-շաֆրան», «Շաֆրան-կիտայկա», «Սլավյանկա», «Անտոնովկա», «Կարմիր շտանդարտ», «Կանդիլ-կիտայկա» և միչուրինյան այլ տեսակի անուշահամ խնձորներ։ Տնկարանն աճեցրել է նաև աշխարհի ամենագովված՝ «Ռենեթ-սիմերենկո» տեսակի խնձորի երկու հազար տնկի։

Տնկարանի դիրեկտոր Արսեն Հակոբյանն ավարտել է Միչուրինսկի պտղաբուծական ինստիտուտը։ Նրա աճեցրած տնկիները մեծ օգուտ են բերում կոլտնտեսություններին։

Գորիսի մոտ մի գյուղ կա, որ Վերիշեն է կոչվում։ Այդտեղ մինչև 1937 թիվը ոչ մի պտղատու ծառ չի եղել. իսկ այժմ գյուղը 22 հեկտար այգի ունի, որից ութ հեկտարն արդեն միրգ է տալիս։ Անցյալ տարի մի շարք սորտերի ծառերից կոլտնտեսությունը չտեսնված բերք է ստացել։ Օրինակ՝ «Զմեռային ոսկե պարմեն» յուրաքանչյուր ծառից 280 կիլոգրամ, իսկ հեկտարից 220 ցենտներ



№ 1 միջնակարգ դպրոցի մի խումբ աշակերտներ դասերից հետո։

խնձոր են քաղել։ Վերիշենի այդ այգիները խնամքով աճեցրել է ագրոտեխնիկ Սերգեյ Արելյանը, իսկ այժմ պահում, խնամում է Մանյա Բակունցը։

Բայց սխալ կլիներ կարծել, թե գորիսցիների զբաղմունքը միայն գյուղատնտեսությունն է։

## ՀՄՈՒՏ ՁԵՌՔԵՐ ԵՎ ՀՐԱՇԱԼԻ ՄԵՔԵՆԱՆԵՐ

Գորիսցիները սերնդից-սերունդ են փոխանցել իրենց վարպետության արհեստների մեջ։ Իսկ ինչպիսի՜ արհեստավորներ՝ քարտաշներ, հյուսներ, մետաղագործներ, դերձակներ է տվել այդ քաղաքը։

Բայց ի՞նչ էր Գորիսն անցյալում՝ մի գյուղաքաղաք։

Սովետական իշխանության օրոք է, որ Գորիսն ստացել է իսկական քաղաքի կերպարանք։ Կառուցվել են մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ, նոր դպրոցներ, հասարակական շենքեր, էլեկտրակայաններ...

Ահա թեկուզ տրիկոտաժի ֆաբրիկան, որն արտադրում է մայկաներ, երեխաների հագուստեղեն...

Լուսավոր, ընդարձակ ցեխերում դրվել են մանող ու գործող հրաշալի մեքենաներ։

Արագ պտտվում են իլիկները, աշխույժ աշխատում գործող մեքենաները և անվերջ վեր՝ դեպի առաստաղ հանում ձմեռվա շապիկների ու մայկաների գործվածքը։

*Հարևան ցեխում ծայր չունեցող տապրակի նման այդ գործվածքը ներկում են ուզածդ գույնի՝ կապտավուն, յասամանագույն, սև, դեղնավուն, ապա չորացնելուց հետո տանում ձևի ցեխը։ Այդտեղ վարպետներն էլեկտրական մկրատներով մոտ տասը մայկա կամ շապիկ միանգամից են ձևում և տալիս կարողներին։ Սրանք էլ, նստած երկու շարքով*



Տրիկոտաժի գործարանում

*դրված կարի մեքենաների մոտ, կարում են, արդուկում և ուղարկում պահեստ։*

*Արտադրանքն արդեն պատրաստ է։*

*Գեղեցիկ փաթեթների մեջ դնելով, այն ուղարկում են ոչ միայն Հայաստանի, այլև Սովետական Միության շատ հեռավոր քաղաքներ ու գյուղեր։*

*Ամեն տեղ՝ անգամ հեռու Սիբիրում, Ալթայի երկրամասում, Ուրալում, Հյուսիսում, Կոմունիզմի մեծ կառուցումներում վերցնում են այդ փաթեթները և կարդում նրանց վրա փակցրած գեղեցիկ պիտակը՝ «Գորիսի տրիկոտաժի ֆաբրիկա»։*

*Իր պատիվն ամենուրեք բարձր պահելու համար ֆաբրիկան խոտան երբեք չպետք է տա։*

*Այդ բանը շատ լավ են հասկանում ֆաբրիկայի բանվոր-բանվորուհիները և լավ են աշխատում։*

*Սոցիալիստական մրցության մեջ առաջին տեղը գրավում են կոմերիտականները։ Փաթաթման ցեխում կոմերիտականներ Ռոզա Շալունցը, Արև Հայրապետյանը, Զաբելա Տողչյանն իրենց պլանը կատարում են 140 տոկոսով։ Նրանցից ետ չեն մնում գործվածքի ցեխի կոմերիտականներ Սեդա Միրաքյանը, Ռոզա Առաքելյանը, Վոլոդյա Դանիելյանը...*

*Նրանց ձեռքերը հըմուտ են, իրենք՝ աշխատասեր ու անձնըվեր։ Դրա համար էլ ֆաբրիկայում բոլորը՝ թե դիրեկտոր Ս. Թաթարյանը, թե կոմերիտկազմակերպության քարտուղար Վ. Անթանոսյանը և թե ուրիշները, հիանում են նրանցով։*

*— Լավ, շատ լավ են աշխատում մեր կոմերիտականները...*

*Գորիսում կա նաև մեխանիկական գործարան։ Փոքր է այն, բայց տեղացիների համար շատ անհրաժեշտ։ Նրա ցեխերում դըրված են խառատային մի քանի տեսակի՝ տաշող, ծակող, հղկող դազգահներ։ Գործարանն առայժմ արտադրում է նիկելապատ մահճակալներ։*

*— Իսկ երբ կառուցումը լրիվ վերջանա,— ասում է գործարանի դիրեկտոր Երվանդ Մինասյանը,— և մենք ձուլող ցեխ ունենանք, մեր աշխատանքը շատ կլինի...*

*Մեխանիկական գործարանից բացի քաղաքն ունի փայտամշակման, կղմինդրի գործարաններ, «Բազմարդ» արտելներ։*

*Գորիսին լույս են տալիս երկու էլեկտրակայան՝ Գորիսգէսը և Ակներգէսը։ Առաջինը դրանցից կառուցված է խոր ձորում։ Վարարակն այդտեղ, ձյունի պես ճերմակ փրփուր դարձած, ցած է գլորվում ահագին բարձրու-*

թյունից։ Ջրվեժի տակ գետի ուժը սանձել են, ստիպել նրան պտտեցնել տուրբինները, լույս տալ քաղաքին։

Բայց նրա տված էլեկտրաէներգիան չբավարարեց աճող Գորիսին։

Գորիսցիները կառուցեցին երկրորդ էլեկտրակայանը, որի նմանն ուրիշ տեղ հազիվ թե լինի։ Նրանք Վարարակի ակներից ջուրը հանել են մոտ չորս հարյուր մետր բարձրություն ունեցող սարի կատարը, ապա խողովակներով բաց թողել ներքև։ Մոտ երկու հարյուր մետր ներքև վազելուց հետո ջուրը գոլծի է դնում Ակներգէսի առաջին էլեկտրակայանը, ապա շարունակելով իր ընթացքը մտնում է երկրորդ էլեկտրակայանի մեջ միայն այստեղ 800 կիլովատ ժամ էներգիա տալով, նորից միանում գետին։

Անվերջ հոսում է էլեկտրաէներգիան, լուսավորում տները, քաղաքի ծառազարդ փողոցները, հիմնարկները, գրասամայրերը...

## ԵՐՋԱՆԻԿ ՍԵՐՈՒՆԴ

Աշխատանքից հետո, կիրակի օրերը, քաղաքի բնակիչները դուրս են գալիս զբոսանքի, գնում են թատրոն, կինոթատրոն։ Ամենուր լսվում է զվարթ երեխաների զնգուն ծիծաղը։

Երջանիկ ու կենսախինդ է Գորիսի մատաղ սերունդը։ Այդ ուրախ, երջանիկ կյանքը նրանց համար ստեղծել է Լենինի—Ստալինի սիրելի պարտիան։ Կապիտալիստական երկրների ամենախոշոր քաղաքներից ոչ մեկում երեխաների համար դաստիարակվելու, աճելու այնպիսի պայմաններ, այնքան զվարճալիքներ չկան, ինչպիսիք ունեն Գորիսի պիոներ-դպրոցականները։

Անցյալում քաղաքն ունեցել է ընդամենը մի դպրոց, ուր սովորել են 18 հոգի։ Այժմ, երեք տեխնիկումից բացի, Գորիսում կա երկու միջնակարգ և մի յոթնամյա դպրոց։ Սովորողների թիվը քաղաքում երեք հազարի է հասնում։

Դպրոցներից երկուսը նորակառույց են։ Մեկը դրանցից՝ № 2 միջնակարգ դպրոցի շենքը, որ միայն վերջերս է ավարտվել, քաղաքում ամենագեղեցիկն է, չորսհարկանի։ Յուրաքանչյուր հարկ ունի իր ընդարձակ ճեմասրահը։ Լուսառատ են նոր կահավորված դասասենյակները, սպորտդահլիճը։ Այդ շենքը դիտելուց հետո, ակամա մտածում ես. «Երանի ես էլ փոքր լինեի և սովորեի աՀա այսպիսի դպրոցում...»

Դպրոցներն ունեն ֆիզիկայի, քիմիայի, բնագիտության կահավորված կաբինետներ, պիոներ-սենյակներ, սպորտհրապարակներ։ № 1 միջնակարգ դպրոցն ունի իր այգին, ուր պատանի միչուրինականները տարբեր



Գորիսի մանկատանը.
Նկարում՝ ձեռագործի խմբակի պարապմունքը։

փորձեր են կատարում, աճեցնում բազմաթիվ մրգատու ծառեր։

Քաղաքում կա նաև պիոներ-տուն և գրքերով հարուստ մանկական գրադարան, որը 3100 գիրք ունի և, բացի դրանից, ստանում է 26 թերթ ու ամսագիր։ Գրադարանին կից կան գրական, աշխարհագրական, պատանի բնասերների, ռուսաց լեզվի ուսումնասիրության խմբակներ, որ ղեկավարում են ուսուցիչներ Նվարդ Միրզոյանը, Արփիկ Նարինյանը, Վլադիմիր Սեմյոնովը։

Գրադարանավար Սաթիկ Հայրապետյանի ջանասեր աշխատանքի շնորհիվ լավ կահավորված, միշտ հաճելի տեսք ունեցող գրադարանը դարձել է քաղաքի պիոներ-դպրոցականների ամենասիրելի վայրերից մեկը։

Խմբակներ կան նաև պիոներ-տանը։



Գորիսի մանկական գրադարանում։

*Դպրոցներում և այդ խմբակներում Գորիսի մատաղ սերունդը ջանասիրությամբ տիրապետում է գիտությունների հիմունքներին, պատրաստվում է անձնվիրաբար ծառայելու սիրելի հայրենիքին։*

*Սքանչելի է Գորիսը, Զանգեզուրի բարձրաբերձ լեռներով շրջապատված այդ քաղաքը, սքանչելի են և նրա պայծառ ապագայի ստեղծագործ շինարարները։*

---

# ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻՑ ՀԵՏՈ

ՀամԼԿԵՄ Կենտկոմի յոթերորդ պլենումի որոշումները նոր լիցք ու նոր թափ են հաղորդել Գորիսի պիոներական կազմակերպության աշխատանքներին։ Ուսուցչական կոլեկտիվները, ավագ ջոկատավարները և ջոկատավարները ծանոթացել են պլենումի որոշումներին, պատմել դրանց բովանդակությունը պիոներ-դպրոցականներին։

Այժմ քաղաքի պատանի լենինյանները պայքարում են այդ որոշումների կենսագործման համար։ Պլենումի որոշումները օգնում են նրանց բարձրացնելու ուսման որակը, գիտակցական դիսցիպլինան։ Յուրաքանչյուր պիոներ ձգտում է որքան հնարավոր է շատ գիտելիքներ ստանալ, որպեսզի ապագայում դառնա սիրելի հայրենիքի համար պիտանի, խիզախ, բազմակողմանիորեն զարգացած քաղաքացի։ Եռում է կյանքը պիոներական ջոկատներում ու դրուժինաներում, առարկայական խմբակներում։

Ահա թե ինչ են գրում գորիսցիները իրենց պատանի լենինյանների պայքարի և աշխատանքի մասին։

## ԼԱՎ ՈՒ ԳԵՐԱԶԱՆՑ ՈՒՍՄԱՆ ՀԱՄԱՐ

*Ահա մի քանի ամիս է, ինչ նշանակվել եմ 5-րդ «Գ» դասարանի 7-րդ ջոկատի ջոկատավար։ Տարեսկզբից սկսած, ես կանոնավոր կատարում եմ իմ բոլոր պարտականությունները։ Կազմել եմ աշխատանքի ծրագիր, ունեմ հուշատետր, օրվա աշխատանքի պլան։*

*Առաջին քառորդին մի քանի աշակերտ՝ Լենա Գյուրջյանը, Ամալյա Հայրապետյանը, Եգիկ Միքայելյանը օտար լեզվից և թվաբանությունից վատ գնահատականներ էին ստացել։*

*Հրավիրեցի ջոկատի հավաքույթ քառորդի արդյունքները քննարկելու համար։ Հավաքույթում պարզ-*

վեց, որ այդ աշակերտները վատ գնահատական են ստացել, որովհետև չեն ունեցել օրվա ռեժիմ, օտար լեզվի բառարաններ չեն պահել, դասարանում ուշադիր չեն լսել ուսուցչի պատմած դասը։

Օգնեցի նրանց օրվա ռեժիմ կազմելու, որով պետք է առաջնորդվեն ամբողջ տարվա ընթացքում։ Դասարանի առաջավոր աշակերտները խոսք տվին օգնել նրանց։ Իրենք՝ և մնացողներն էլ խոսք տվին երկրորդ քառորդում ավելի լավ սովորել։ Եվ երկրորդ քառորդում այդ աշակերտներն ուղղեցին իրենց գնահատականները։

Այժմ կանոնավոր լույս ենք ընծայում ջոկատի պատի թերթը։ Բոլոր պիոներներն ակտիվ կերպով մասնակցում են պատի թերթի աշխատանքներին՝ նկարում են, թղթակցություններ գրում։ Պիոներներն առանձին սիրով են զբաղվում ընթերցանությամբ։ Նրանք աշխատում են որքան կարելի է լավ սովորել և ուսման լավ ու գերազանց ցուցանիշներով բարձրացնել ջոկատի և դպրոցի պատիվը։

Լ. ՄԻՆԱՍՅԱՆ

(Գորիսի № 1 միջնակարգ դպրոցի 7-րդ ջոկատի ջոկատավար)

## ԴՐՈՒԺԻՆԱՅԻ ԽՈՐՀՈՒՐԴԸ ԵՐԱՇԽԱՎՈՐՈՒՄ Է

Հոկտեմբերի տասնութն էր։ Այդ օրը պետք է կայանար Գորիսի № 1 միջնակարգ դպրոցի պիոներական դրուժինայի խորհրդի նիստը։ 7-րդ «Բ» դասարանի աշակերտներն անհամբեր սպասում էին դասերի վերջին։

Սովորականից ավելի ուրախ էին այդ դասարանի մի քանի աշակերտ, որոնք հրավիրված էին դրուժինայի խորհրդի նիստին։ Նրանք պետք է ստանային խորհրդի երաշխավորությունը կոմերիտմիության մեջ ընդունվելու համար։ Լենա Մինասյանը, Մարատ Ղազարյանը, Ժորա Համբարձումյանը և Ռոբերտ Հարությունյանը համոզված էին, որ կստանան այդ երաշխավորությունը, որովհետև լավ էին սովորել, եղել էին իսկական պիոներներ։



№ 1 դպրոցի դրուժինայի խորհուրդը երաշխավորություն է տալիս։

Ժամը երեքին խորհրդի նիստը սկսվում է։ Հայտնում են օրակարգը։ Ձայն է խնդրում Ժորա Ադամյանը։ Նա գովեստով է խոսում Մ. Ղազարյանի և Ժ. Համբարձումյանի մասին։

— Ռոբերտն ու Լենան միշտ չորս ու հինգ գնահատականներ են ստանում։ Դրուժինայի խորհուրդը սխալված չի լինի, եթե նրանց երաշխավորի կոմերիտմիության մեջ անցնելու համար,— իր ելույթն ամփոփում է գերազանցիկ Ռամելա Խաչատրյանը։

Բոլորը համաձայնվում են ելույթ ունեցողների հետ։

Դիմողները խոսք են տալիս արդարացնել կոմերիտականի բարձր կոչումը և օրինակ ծառայել բոլորի համար։ Դրուժինայի խորհուրդը միաձայն որոշում է Լենային, Մարատին, Ժորային ու Ռոբերտին երաշխավորել կոմերիտմիության մեջ ընդունվելու համար։

Կոմերիտականներ՝ Լենան, Մարատը, Ժորան ու Ռոբերտը հիմա էլ սովորում ու աշխատում են այնպես, ինչպես վայել է Լենինյան-Ստալինյան կոմերիտմիության անդամներին։

ՌՈԲԵՐՏ ԽԱՉԱՏՐՅԱՆ

(Գորիսի № 1 դպրոցի պիոներական դրուժինայի խորհրդի նախագահ)

# ՍԻՐՈՒՄ ԵՆ ԵՐԳԸ

Գորիսի № 2 միջնակարգ դպրոցի պիոներական ակումբում աշխուժություն է տիրում:

— Այսօր ի՞նչ նոր երգ ենք սովորելու,— հարցնում է պիոներներից մեկը խմբակի ղեկավար պիոներ Գրետա Հակոբյանին:

— «Երջանիկ մանկություն» երգը,— պատասխանում է Գրետան:



№ 2 դպրոցի լարային գործիքների նոյակը:

Նուագը դադարում է: Բոլորը կանգնում են իրենց տեղերը: Սկսվում է հերթական երգի ուսուցումը:

Եվ այսպես ամեն անգամ, պիոներներն իրենց ազատ ժամերին մասնակցում են երգի խմբակի պարապմունքներին:

Պիոներները սիրում են երգը, որը նրանց ոգևորում է և աշխատանքի մղում: Խմբի ղեկավար Գրետան կարճ ժամանակում պիոներներին սովորեցրել է սովետական Հայրենիքին և մանուկների սիրելի բարեկամ Մեծ Ստալինին նվիրված շատ երգեր: Խումբը հաջողությամբ կատարում է «Սովետական Միության պիոներների երգը», «Երգ Առաջնորդին» և այլ երգեր:

Խմբակում մասնակցող պիոներներից հատկապես լավ են երգում՝ Մելադիկ Միքայելյանը, Լաուրա Արզարյանը, Գարուն Մարկոսյանը: Նրանք իրենց գեղեցիկ ձայնով և սրտաբուխ կատարումով մեծ հաճույք են պատճառում բոլոր պիոներներին ու դպրոցականներին: Նրանց կատարած երգերն այժմ երգում են բոլոր ջոկատներում:

Երգի խմբակից բացի, մենք կազմակերպել ենք մանդոլինայի, ջութակի և այլ խմբակներ, որոնց ղեկավարները լավագույն պիոներներն են: Մեր դրուժինայի պիոներներն այդ խմբակներում ստանում են գեղարվեստական դաստիարակություն և այդպիսով նպաստում ՀամԼԿԵՄ Կենտկոմի 7-րդ պլենումի որոշումների կատարմանը:

ԼԱՈՒՐԱ ՍՈՒԼԵՅՄԱՆՅԱՆ
(Գորիսի № 2 միջնակարգ դպրոցի ավագ ջոկատավար)



Դրուժինայի խորհրդի նիստը: Քննարկում են աշխատանքի պլանը:

# ՄԵՐ ՍԻՐԵԼԻ ԲԱՆԱՍՏԵՂԾԸ

*Նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ*

Ամեն տեղ, ուր հանդես է գալիս բանաստեղծ Սարմենը, ունկնդիրները ջերմ ընդունելություն են ցույց տալիս նրան: Կես դար ապրած բանաստեղծն անսահման ուրախությունից ասես երիտասարդանում է:



Նա ամենից շատ երջանիկ է զգում իրեն սովետական երջանիկ մանուկների, պիոներների ու դպրոցականների շրջանում: Նրանք սիրում են բանաստեղծին: Դրա համար էլ ճամբարներում ու պալատներում, դպրոցներում ու պիոներտներում, արշավների բե խարույկների ժամանակ հնչում են Սարմենի երգերն ու բանաստեղծությունները: Վառվռուն պատանիներն ու աղջիկները ոգևորությամբ են լսում նրա «Հերոսական մահ», «Հունան», «Գեներալի տղան» և մյուս պոեմները: Մեծ սիրով են կարդում նրանք նաև «Յոթ երջանիկներ» և «Ծաղկաձոր» ժողովածուները.

Երջանիկ չի եղել սակայն բանաստեղծի մանուկ հասակում:

Սարմենը ծնվել է 1901 թվին Թյուրքիայում: Դեռ նոր էր նա գրաճանաչ դարձել, երբ բռնկեց առաջին համաշխարհային պատերազմը: Թյուրք ջարդարարները սպանեցին բանաստեղծի հորն ու մորը: Մանուկ Արմենակը մեծ դժվարություններով պապի հետ հասավ Վան: Եկավ ռուսական փրկարար բանակը: Արմենակն այդ բանակի հետ Կովկաս գաղթեց: Այդ ժամանակ ողջ էին մնացել միայն քույրն ու ինքը: Սկսվեցին որբանոցային դառն օրերը...

Վերջապես ծագեց սովետական պայծառ արևը և իր կենարար շողերով ջերմացրեց նաև երիտասարդ Սարմենի կյանքը: Նրա առաջ բացվեց լուսավոր ու լայն մի ճանապարհ:

1924 թվին Սարմենն ավարտեց Լենինականի մանկավարժական տեխնիկումը և մինչև 1929 թիվն աշխատեց դպրոցներում:

1932 թվին Սարմենն ավարտեց Հայաստանի Պետական համալսարանը և սկսեց աշխատել որպես խմբագիր տարբեր ամսագրերում և ռադիո-կոմիտեում:

Շատ գրքեր է գրել Սարմենը, իսկ նրա 120 բանաստեղծություններ երգ են դարձվել և երգվում են ամենուրեք:

Նրա գրչին է պատկանում նաև Հայաստանի Պետական Հիմնի տեքստը:

Դեկտեմբերի 28-ին Սովետական Հայաստանի աշխատավորները տոնեցին բանաստեղծ Սարմենի ծննդյան հիսնամյակն ու գրական գործունեության 30 տարին: Բոլորը նրան ցանկացան երկար կյանք և հաջողություններ: Մենք էլ սրտանց ցանկանում ենք սիրելի բանաստեղծին ստեղծագործական նորանոր հաջողություններ:

## ԻՄ ՄԵԾ ԵՂԲԱՅՐԸ

*ՍԱՐՄԵՆ*

Իմ մեծ եղբայրը բանակում
Դարձել է քաջ կապիտան,
Գրել է նա իր նամակում.
«Շուտով կգամ Հայաստան»:
Նամակի հետ ճամփել է տուն
Իր նկարը բանկագին
Վրան գրած. «Իմ սիրասուն
Փոքրիկ եղբայր Ռուբիկին»:

Պահում եմ ես, ինչպես մի գանձ,
Լուսանկարը սիրուն,
Եվ իմ դասերը գերազանց,
Գերազանց եմ սովորում:
Եվ սպասում եմ ամեն օր,
Թե երբ կգա մեր Արամ,
Որ իմ ուրախ հինգերը նոր՝
Հայրիկըս ցույց տա նրան:




*ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ*

*Նկ. ԱՐ. ԶԱՔԱՐՅԱՆԻ*

Փոքրիկ Ավոն դռան մոտիկ
Գտավ կարմիր լոբու հատիկ։

Կարմիր լոբին բերեց-ցանեց
Հողով լիքը ամանի մեջ։

Հետո նրան առատ ջրեց,
Արևի տակ տարավ դրեց։

Անցավ մի ժամ, Ավոն եկավ
Տեսնի ծիլը դեռ դուրս չեկա՞վ։

Եկավ, կանգնեց, նայեց երկար,
Ինչքան նայեց՝ ոչինչ չկար։

Գնաց եկավ ամբողջ օրը,
Այդ օրն անցավ, եկավ նորը։

Ավոն նորից նայեց երկար,
Նորից իզուր, ոչինչ չկար։

Մյուս օրը եկավ Ավոն,
Հանկարծ կանչեց՝ հարայ տալով.—

— Էնե՛յ, Արեգ, Նվարդ, Գուրգեն,
Ծիլ է տվել լոբիս արդեն...

Ընկերները եկան շտապ,
Բայց դե ծիլը փոքր էր անչափ։

Մատիտի ծայր կարծես լիներ.
Համբերություն Ավոն չուներ,

Որ մեծանա ծիլը շուտով,
Բռնեց-քաշեց երկու մատով.

Քաշեց և ի՛նչ... ծիլը իսկույն
Պոկվեց, մնաց նրա ձեռքում...

Փոքրիկ Ավոն դռան մոտիկ
Արցունք թափեց հատիկ-հատիկ...



# ՀԱԶԱՐԱՎՈՐ ՏԱՐԻՆԵՐ ԱՌԱՋ

Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Հայաստանի Պատմական Թանգարանի հնագետները պեղումներ էին կատարում Նոր-Բայազետի շրջանում։ Չորս տարի առաջ այս վայրը ծածկված էր Սևանի ջրերով։ Այժմ լիճն այստեղ նախկին ափից 500 մետր ետ է քաշվել։ Նրա տակից դուրս են եկել 80 դամբարան, որոնց մեջ մարդկային կմախքներից բացի գտնվել են նաև հետաքրքիր իրեր։

Դամբարաններից մեկում 6 մարդու կմախք կա։ Նրանցից մեկը կենտրոնում է դրված, իսկ հինգը նրա ոտքերի կողմում պպզած են։ Կենտրոնում գտնվող կմախքի թևերին հագցրած է մեկական ապարանջան, իսկ ոսկորների հետ խառնված են մի քանի ուրիշը։ Դրանք պատրաստված են բրոնզե կլոր ձողերից, տափակ, ժապավենանման թիթեղից։ Ապարանջաններից մեկի ծայրը նման է օձի գլխի։ Դա օձագլուխ ապարանջանն է։ Լինում են նաև ծանր ու մեծ ապարանջաններ։ Նրանց քաշը երբեմն հասնում է 300 գրամի։

Այստեղ դուք կգտնեք ծաղիկի բարակ ձողից ոլորած մատանիներ։ Ձեզ կհետաքրքրեն նաև տարբեր ձևի, մեծության և գույնի հուլունքները։ Սրանք պատրաստված են ագաթից, թանկարժեք և գույնզգույն քարերից, մասսա կոչվող շաղախից։ Մանավանդ շատ լավ են մշակված և վառվռուն գույներ ունեն գնդաձև, տակառաձև և բազմանկյունանի, ինչպես նաև ոսկե հուլունքները։ Սրանց մի մասը ժամանակի ընթացքում ջրի ազդեցության տակ մաշվել են և իրենց սկզբնական փայլը կորցրել։ Այստեղ հուլունքների կենտրոնում գտնվել է 2900—3000 տարեկան կավլինի մի հատիկ, որը ամենահին հատիկն է աշխարհում։ Այս զարդերով մարդիկ զարդարել են իրենց։



Հետաքրքիր են նաև ոսկորների հետ խառնված բրոնզե երկթևանի նետերը։ Հավանաբար դրանցով սպանել են տիրոջ հետ թաղվող ստրուկներին։



Ֆոտո Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

Զարդանկարված պատի մոտ շարված կավամաններում մեռածների համար ուտելիք ու խմելիք է պահվել։ Ամաններից մի քանիսի մեջ մինչև այժմ պահպանվել են ճաշերից մնացած ոսկորները։ Հնում կարծում էին, թե մահվանից հետո էլ մարդիկ շարունակում են ապրել։ Հենց դրա համար էլ մեռնողների հետ թաղում էին նրանց զենքերը, աշխատանքային գործիքները, տնային կահկարասին, զարդարանք. իսկ եթե մեռնողը տոհմի կամ ցեղի առաջնորդն էր, նրա հետ միասին սպանում և թաղում էին նրա ծառաներին, ստրուկներին, երբեմն էլ կնոջը և անչափահաս երեխաներին, որ մյուս կյանքում նրան սպասարկեն։ Երբեմն մի դամբարանում տեղավորում էին 100 մարդ։

Այս դամբարանը նույնպես, որտեղ 6 մարդ է տեղավորված, կոլեկտիվ թաղման օրինակներից մեկն է։

Սևանի ափին այժմ կարելի է տեսնել ջրից կիսով չափ դուրս եկած, 4—8 մետր տրամագիծ ունեցող հսկայական քարե բուր-



գեր և շրջանաձև կանոնավոր շարված ցածր պատեր։ Նրանց տրամագիծը հասնում է 2—4 մետրի։ Դրանք էլ դամբարաններ են և կոչվում են կրոմլեխներ։ Նրանք մոտավորապես 2600—2800 տարվա հնություն ունեն.

իսկ բուրգերը, որ կոչվում են կուրգաններ, կառուցվել են 3500—4000 տարի առաջ։

Այս բոլորից պետք է եզրակացնել, որ Սևանի լիճը մի քանի հազար տարի առաջ շատ ավելի փոքր է եղել, քան այժմ։ Լիճը հետո բարձրացել է և իր տակն է առել ոչ միայն այդ դամբարանները, այլ տոհմերի ու ցեղերի ամբողջ բնակատեղիներ, որոնց ավերակների պատերը նույնպես երևում են ցամաքած տարածության վրա։

Այդ ժամանակ Սևանի ավազանում ժողովուրդներ դեռ չէին կազմվել։ Դրանց փոխարեն տոհմեր և ցեղային միություններ կային։ Այս դամբարանները պատկանել են ցեղային միություններից որևէ մեկին, որի անունը մեզ հայտնի չէ։ Բայց ուրարտական սեպագիր արձանագրություններից հայտնի է, որ այս տերիտորիան մըտել է «Վելիքյուխի երկրի» կազմի մեջ։ Հետևապես սրանք պետք է պատկանած լինեն այդ երկրին։




ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ

Իր մայրիկի հետ գրախանութում
Հրայրը կանգնած գրքերն էր դիտում։
Պուշկին, Թումանյան, Գորկի, Մարկ-Տվեն,
Կողք-կողքի կանգնած ժպտում են իրեն...

Նոր գրքեր գնեց Հրայրի մայրը,
Շատ ուրախացավ փոքրիկ Հրայրը։
— Երանի՜,— ասաց,— սիրելի մայրի՛կ,
Ինչքան որ գիրք կա, մենք ունենայինք։

Լսեց խոսքերն այս պիոներ Արան
Եվ ընկերաբար մոտեցավ նրան։
— Ավելի շատ գիրք, քան խանութներում,
Կգտնես դու մեր գրադարանում։

Եվ Խնկո-Ապոր գրադարանում,
Նոր ընթերցող է մի ավելանում.
Ձեզ ծանոթ անուն՝
Հրայր Քոչարյան,
Լավ ընկեր է, չէ՞, պիոներ Արան։

# ՈՐՍՈՐԴ ՎԱՇԱԳԻ Արկածները



Վ. ԱՆԱՆՅԱՆ

## ԸՆԿՈՒԶԵՆՈՒ ՏԱԿ

Ահա վայրի ընկույզի անտառը՝ Օխչի գետից վերև, լեռան արևակող լանջին։ Դարավոր ընկուզենիներն իրենց ծուռ ու մուռ բազուկները երկարել են գետի վրա։ Ընկույզը հասել է ու թեթև քամուց կաթկթում է։ Ընկուզենիների տակ մեծ-մեծ քարեր կան։ Ծառի կատարից թափով գալիս է ընկույզը, շրխկ՝ զիպչում քարին, դուրս պրծնում իր պատյանից ու գլորվում-ընկնում քարերի միջև թափված դեղին տերևների շեղջի մեջ. իսկ շատերն ընկնում են գետն ու նրա հոսանքով ցած տարվում։ Եթե աշնանը քայլես Օխչի գետն ի վեր, նրա ափերին այստեղ-այնտեղ կպատահես դեմ առած ընկույզների, որ ջուրն իր հետ բերել է Խուստուփի լանջերից։

Քարերին զարնվող ընկույզների կտկտոցը գրավում է Խուստուփի վայրի բնակիչներին։ Տարվա այդ պահին վայրի կենդանիները ընկուզենիների տակ են։ Դրա համար է Վաշագն իր ընկերներով Օխչի ձորը իջել։ Այդտեղ նրանք ներկա եղան մի ուրիշ զվարճալի տեսարանի։

Արջը բարձրացել էր ծառը. ըստ երևույթին նրա տակ ընկույզ չէր գտել. դե ընկածը ճարպիկ սկյուռները փախցնում են։ Բարձրացել ու թափահարում էր ամենաբարձր ճյուղերը։ Բավականաչափ ընկույզ թափվեց, մեծ մասը գետի մեջ, ու ցած գնաց նրա փրփուրների հետ։

Մինչ արջը կիջներ, որ տեր կանգնի իր աշխատանքին, քարի ճեղքից դուրս եկան գորշուկները՝ իրենց տափակ ու ճարպակալած մարմինները ծանր-ծանր շարժելով, և սկսեցին թափված ընկույզները հավաքել։

Ծիտեն որտեղից ցատկոտելով առաջ եկան ճարպիկ ու ճկուն սկյուռները և իրենց մանր աչքերը պսպղացնելով՝ սկսեցին արագ-արագ իրենց բները կրել այն, ինչ գորշուկները չէին նկատել։

Երկու այծյամ թռան-ջուրն անց կացան և իրենց մեծ-մեծ ականջները սրած՝ սկսեցին և՛ ականջ դնել, և՛ իրենց բաժինը հավաքել։ Ընկույզի կճեպն այնքան բարակ էր, որ նրանք հեշտությամբ ջարդում էին ու վայելում նրա յուղալի միջուկը։ Տերևի կույտերի տակից դուրս վազեցին մկները և սկսեցին իրենց առջևի թաթիկներով ընկույզներ գլորել դեպի իրենց բները։

Նույնիսկ ագռավները եկան ու մի-մի հատ վերցրին (կարծես ծառի վրայից տանել չէին կարող) ու թռան նստեցին դիմացի ժայռի տափակ կտուրին, որ այդ ապահով բարձրության վրա հանգիստ ջարդեն-ուտեն. այդտեղից շրջակայքը պարզ երևում է. ոչ մի գազան զաղտագողի չէր մոտենա նրանց։

Արջն իջավ, դես-դեն ընկավ՝ ընկույզ չկա։ Բարկացավ, թքոտեց, Ո՞ւր կորան ընկույզները։ Գողերը արագ ու անձայն չքացել էին։ Թաթերով չոր տերևի կույտերը դեսդեն ցրեց, փնթփնթաց, ո՞ւր կորան իր թափած ընկույզները։ Չէ՛, ճար չկա, քաղցած է, նորից պիտի ծառ բարձրանալ։ Բարձրացավ ու հենց շարժեց ճյուղերից մեկը, անկոչ հյուրերը նորից մեկիկ-մեկիկ երևացին և սկսեցին անձայն հավաքել։

Արջը ցած իջավ՝ փնտրեց. ա՛յ քեզ բան, ոչ մի ընկույզ չկա։ Այդ ժամանակ մի ոզնի

---

Սկիզբը տես «Պիոներ» 1951 թ., № 11։

ընկույզը բերնին ուշացած փախչում էր դեպի իր բույնը։ Արջն այնպես գոռաց նրա վրա, որ անտառը դմբդմբաց, այսինքն՝ անամոթ, ո՞ւր ես փախցնում իմ ընկույզը, քեզ համա՞ր եմ չարչարանքով ծառը բարձրացել։ Գոռաց, մի փաթիլ բամբակի չափ թուք շըպրտեց նրա ետևից ու վրա հասնելով, ահագին թաթով հարվածեց նրան։ Ապա պպզեց ու թաթն սկսեց թափահարել օդում. ոզնու փշերը խրվել էին մեջն ու խիստ ցավեցնում էին։ «Բո՛, բո՛, բրթ, բրթ» դժգոհ փնթփնթում էր նա ու թաթը քսում իր կրծքին, որ փշերը դուրս գան։

— Հը՞, կրակելու ժամանակը չի՞,— շշուկով հարցրեց Արասը։

— Կրակենք,— պատասխանեց Վաչագը՝ հրացանի փակը բանալով։

Թաքստոցից եկող այդ դավադիր շշուկից արջը վայրկյանապես ուշքի եկավ ու մի թաթը բարձր պահած, երեք ոտքով նետվեց ձորը, անցավ Օխչի գետը և մտավ անտառը. բայց դե ո՞ւր պիտի փախչեր որսորդ Վաչագի գնդակից...

## ԻՆՉՊԵՍ ԱՐՋԸ «ՓԱԹԱԹԵՑ» ԻՐ ՎԵՐՔԵՐԸ

Արջը փախչում էր գետի մյուս ափի լանջով, նոսր անտառի միջով։ Նրա ահագին թուխ մարմինը սևին էր տալիս աշնան դեղին ու նարնջի գույների մեջ։

Առաջին համազարկից հետո մի զարմանալի բան կատարվեց. գազանը պտույտ եկավ տեղում և անցնելով մի մեծ կոճղի ետև, սկսեց նրանից ինչ-որ բաներ պոկել ու սեղմել իր կրծքին։

— Սպասեցե՛ք, մի՛ կրակեք,—հրահանգեց Վաչագը։

Արջը ծառից-ծառ էր անցնում, նրանց բներից ինչ-որ բան էր պոկում, ապա նըստում էր գետնին ու առաջին թաթերը սեղմում կրծքին։

— Էս ի՞նչ բանի է,— հարցրեց Հարությունը։

— Սպասիր, չկրակես, ծառերից մամուռ է պոկում...

Վաչագը հայացքով հետևում էր արջին ու կարծես սկսել էր հասկանալ նրա զարմանալի արարքը։

Այո, Վաչագի ենթադրությունը ճիշտ էր. արջը գնդակների հարվածներից կարծես կազդուրված, արագացրեց իր ընթացքը և անհայտացավ անտառի խորքում։

Որսորդները վազքով անցկացան գետն ու հետապնդեցին վիրավոր գազանին։ Ահա այստեղ էր, որ նրանք համազարկ տվին։ Դեղին տերևներն արյունով են ներկված։ Արյուն է թափված և կոճղի մոտ։ Իսկ դենը արյուն չկա. սա ինչ բան է։ Վաչագը ընկերներին մատով ցույց էր տալիս ծառերի հյուսիսային բները, որոնց վրայի խիտ մամուռից փնջեր էին պոկված. տեղ-տեղ ծառերի բներին նշմարվում էին արջի ճանկերի հետքերը։

Վաչագը ցույց էր տալիս և լույս, նշանակալից ժպտում։



— Վերքը փաթաթել է ու փախել,— վերջապես շշուկով ասաց նա ընկերներին ու արջի հետքերով անձայն առաջ գնաց։

Ոչ մի տեղ արյուն չկար, մինչդեռ որսորդներից ամեն մեկը համոզված էր, որ իր գընդակը կպել է։ Ինչպես է արջը «փաթաթել» իր վերքը, որ արյուն չի գնում. ամենքի գըլխում այս հարցն էր։ Բայց որսի տեղում

*խոսել չի կարելի, Վաչագը ձեռքը շրթունքներին դնելով՝ պատվիրում է ձայն չհանել: Ո՞նց պարզես այդ խորհրդավոր երևույթը: Պարզվեց վիրավոր արջին խփելուց հետո: Նա թաքնվել էր ժայռի ստորոտի մի խոռոչում, թփերի մեջ: Խշշոցից դուրս պրծավ, որ փախչի, գնդակները շամփրեցին:*

*Երբ մոտեցան խռխռացող գազանին, նրա կողի ու կրծքի վերքերից Վաչագը փունջփունջ մամուռ հանեց ու ցույց տվեց ընկերներին.*

*— Տեսնո՞ւմ եք ինչով է խցկում իր վերքերը...*

*Երբ գյուղում արյունոտ մամուռի փափուկ փնջերը ցույց տվին Վաչագին որսորդություն սովորեցնող ծերունի Տիգրանին, նա գլուխը տարուբերեց ու ասաց.*

*— Կյանքի պես թանկ բան չկա: Եվ դրա համար ինչեր ասես, որ չեն հնարում անլեզու կենդանիները...*

*Նայում էր ծեր որսորդը ձեռքի արյունոտ մամուռին ու մտածում, թե ո՞վ է սովորեցրել արջին մամուռով արյան առաջն առնել...*

---




*Մ. ՄԱԴԱԹՅԱՆ* *Նկ. ԱՆ. ՉՈՐԴԱՋՅԱՆԻ*

Տոնական հրավառությունների ժամանակ Երևանում, ինչպես նաև եղբայրական մյուս ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում, երկինք են սլանում բազմաթիվ հրթիռներ, որոնք պայթելով, երկնակամարը ծածկում են դեղին, կարմիր, կանաչ և այլ գույնի կրակների անձրևով:

Հրթիռն ամենապարզ ռեակտիվ շարժիչն է: Նա բաղկացած է սովորական ստվարաթղթից պատրաստած մի հասարակ խողովակից, որի մի ծայրը ամուր փակված է: Խողովակի մեջ լցված է մամլած սև վառոդ, իսկ գլխիկի մեջ տեղավորված են քիչ քանակությամբ, տարբեր այրվող նյութեր: Դրանք են, որ գունավոր կրակներ են առաջացնում: Հրթիռի շարժիչը հենց նրա մեջ այրվող վառոդն է:

Գիտնականները ասում են, որ վառոդը գոյություն է ունեցել մեզնից դեռ մի քանի հազար տարի առաջ: Հույները պաշարված քաղաքները հրդեհելու համար վառոդ էին օգտագործում: 14-րդ դարում արաբները, Ալեքսիրաս ամրոցը իսպանացիներից պաշտպանելու ժամանակ, նույնպես վառոդ են գործածել: Այնուհետև վառոդը գործածվել է 1494 թվին ֆրանսիական Կառլոս 8-րդ թագավորի կողմից իտալական ասպետների դեմ մղված պատերազմում:

Թե՛ վառոդը, թե՛ հրթիռները Ռուսաստանում հայտնի էին դեռ հին ժամանակներից:

Ոչ մի երկրում այնքան շատ և որակով վառոդ չէին պատրաստում, ինչքան Ռուսաստանում, իսկ 1750 թվին գյուտարար Սեգները հնարեց սեգներյան անիվը, որն ամենապարզ ռեակտիվ շարժիչներից մեկն է:

1847 թվին ռուս գեներալ Կոնստանտինովը մշակեց աշխարհում ամենալավ հրթիռը և նրա թողարկելու հաստոցը: Գեներալ Կոնստանտինովը ավտոմատացրեց հրթիռներ պատրաստելու վտանգավոր աշխատանքը: Նրա աշխատանքն այնքան հաջող էր, որ իսպանական կառավարությունը Ռուսաստանին պատվիրեց Կոնստանտինովի սարքավորում պատրաստել:

Մարդիկ միշտ ձգտել են օդում թռչել: Բազմաթիվ շարժիչների հետ միասին մտածել են օգտագործել նաև ռեակտիվային ուժը: Իսկ ինչո՞ւ: Երբ մյուս բոլոր շարժիչները մարմինը շարժելու համար պահանջում են հենակետ՝ ցամաք, ջուր, օդ, ապա ռեակտիվ շարժիչը հենակետ չի պահանջում: Տիեզերքի անօդ տարածության մեջ նա կշարժվի ավելի արագ, որովհետև այնտեղ օդի դիմադրություն չի լինի:

1881 թվի մարտի 1-ին Պետերբուրգի հաղորդակցության ճանապարհների ինժեներների ինստիտուտի ուսանող Ն. Հ. Կիբալչիչը Ալեքսանդր 2-րդ ցարի դեմ մահափորձ կատարելու համար ձերբակալվեց և դատապարտվեց մահվան: Բանտում, նախքան մահապատիժը, նա խնդրեց թուղթ ու բանաք և զբաղվեց իր նախագծով:

Ահա թե ինչ է գրել նա այդ ժամանակ.

«Ես հավատում եմ իմ ներշնչման իրականացմանը և այս հավատն իմ սոսկալի վիճակում ինձ թև է տալիս: Երբ իմ նախագիծը գիտնականների կողմից հաստատվի, ապա ես երջանիկ կլինեմ, որ հայրենիքին և մարդկությանը մեծ ծառայություն եմ մատուցել: Ի՞նչ ուժ կարելի է գործադրել օդագնացության համար: Իմ կարծիքով այդպիսի ուժը դանդաղ այրվող նյութերն են: Պատկերացրեք, որ մենք ունենք երկաթի թիթեղից պատրաստված, անհրաժեշտ չափերի մի գլան, որը բոլոր կողմերից ամուր փակված է և իր ցածի մասում միայն մի անցք ունի.

այդ գլանի առանցքում տեղավորենք մամլած վառոդ և վառենք: Այրվելու ժամանակ գազեր է առաջանում: Երբ գլանը փակ կողմով դեպի վեր է դրված, ապա գազերը, ճնշման որոշ մեծության դեպքում, պետք է գլանը բարձրացնեն դեպի վեր»:



Կիբալչիչն իր նախագծի մեջ տալիս է նաև գծագիր: Կիբալչիչի նախագիծը մինչև Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան մնաց ցարական պահնորդության արխիվներում:

Ռեակտիվ շարժիչներով զբաղվեցին ուրիշ շատ գիտնականներ էլ: Նրանցից ամենանշանավորը Կ. Է. Ցիոլկովսկին էր: Ցիոլկովսկին Կալուգա քաղաքի գիմնազիայի ֆիզիկայի ուսուցիչ էր: 1903 թվին նա տպագրեց «Տիեզերքի ուսումնասիրությունը ռեակտիվային սարքերով» գիրքը: Երկար տարիներ Ցիոլկովսկին աշխատում էր ռեակտիվ ինքնաթիռներ հորինելու վրա:

Ցիոլկովսկու աշխատանքները շարունակեցին իր աշակերտ Ցանդերը, Տիխոնրավովը, Գլուշկոն և ուրիշները:

Մի ուրիշ գիտնական՝ Յու. Վ. Կոնդրատյուկը, համարյա թե նույն սկզբունքներով տիեզերական թռիչքների ինքնաթիռ էր մշակում: Նրա նախագծով մի ինքնաթիռի մեջ պետք է տեղավորվեր մի ուրիշ, ավելի փոքր ինքնաթիռ, իսկ այս երկրորդի մեջ՝ երրորդը, և այսպես շարունակ: Առաջին ինքնաթիռը, որոշ արագություն ստանալուց հետո, դուրս է նետում երկրորդին, սա մեծացնելով իր արագությունը, նետում է երրորդին, այսպես մինչև ստացվի երկրագնդի ձգողական ուժը հաղթահարելու համար անհրաժեշտ արագությունը:

Առաջին անգամ ռեակտիվ ուժերը փորձարկվեցին լաբորատորիաներում, հետո մարդիկ սկսեցին այն փորձարկել շարժման մեջ: Նախ գործադրվեցին փորձնական ավտոմեքենաներ և, վերջապես, ռեակտիվ ինքնաթիռներ: Արագ կերպով ձևափոխվեցին նաև ռեակտիվ ինքնաթիռները ու նրանց շարժիչները:

Ռեակտիվ շարժիչով ինքնաթիռը կարող է զարգացնել մի ժամում 900—1000 կիլոմետր արագություն և վեր բարձրանալ մինչև 12—14 հազար մետր:

Սովետական երեխաները հետաքրքրվում են սովետական առաջավոր գիտության նվաճումներով: Նրանցից շատերը պատրաստում են ռեակտիվ շարժիչով ավիամոդելներ:

Լենինգրադի և Մոսկվայի ավիամոդելիստները 1949 թվի համամիութենական ավիամոդելային մրցումներին հանեցին հեղուկ վառելանյութով աշխատող մի քանի տիպի ռեակտիվ շարժիչներ, որոնք հիանալի արդյունքներ տվին:

Երևանի պիոներ-դպրոցականները նույնպես պատրաստում են ռեակտիվ ինքնաթիռների մոդելներ: Առաջին մոդելը դեռ 1942 թվին պատրաստեց Երևանի պատանի տեխնիկների կենտրոնական կայանի անդամներից մեկը: Մոդելը հիանալի վեր բարձրացավ և թռիչքի ժամանակ խճճվեց ծառի ճյուղերի մեջ ու այրվեց: Կայանի մի ուրիշ ավիամոդելիստ՝ Վերեջ Պետրոսյանը նույնպես մի քանի հաջող փորձեր կատարեց: Վերջերս ավիամոդելիստներ Արամ Ստեփանյանը և Միքաս Ֆահրադյանը օգտվեցին «Տեխնիկա մոլոդյոժի» ժուռնալում տպված գծագրերից և ավելի կատարելագործեցին այդ շարժիչը:

Երևանի Պիոներների պալատի ավիամոդելիստներ՝ եղբայրներ Պետիկ և Ալբերտ Խաչատրյանները պողպատից ձգկել և պատրաստել են ռեակտիվ շարժիչ՝ իրենց մոդելի այրվող գազերի պուլսացիայի համար գործադրելով սովորական անվտանգ ածելու լեզվակներ:

Պալատը իր ավիամոդելային խմբակի համար ձեռք է բերել Մոսկվայի սպորտսմեն Վասիլչենկոյի չեմպիոնական պողպատից պատրաստված և հեղուկ վառելանյութով աշխատող շարժիչներից մեկը: Այժմ պալատի ավիամոդելիստները այդ շարժիչի համար ավիամոդել են պատրաստում:



# ՁՄԵՌԱՅԻՆ ԱՐՇԱՎ

Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Ցուրտ առավոտ էր, այնքան ցուրտ, ու. թվում էր, թե մարդիկ բոլորովին տանից դուրս չեն գա։ Բայց ահա Կիրովականի Վանաձոր կոչվող ծայրամասից տղաների մի խումբ արագ քայլերով դիմում է դեպի ձ խ լանջի անտառը։

Ահա և անտառը։ Տղաների գլխավերևում ծառերի կատարներին քսվելով տարածվում են ամպերը։ Պատանիները ծածկվում են ամպերի ետևում և միայն թարմ, նոր եկած ձյան վրա մնացած հետքերն են վկայում, որ քիչ առաջ այդտեղով անցել են դահուկավորները։

— Ի՜նչ գեղեցկություն,— չկարողանալով զսպել հիացմունքը, բացագանչում է Ռաֆիկ Մեհրաբյանը։

— Այստեղ շատ հաճելի է դահուկներով սահելը,— արձագանքեց խմբի ղեկավարը, ռեսպուբլիկայի հայտնի դահուկավոր Համիկ Արզումանյանը։

— Այստեղ շատ ձյուն կա, վայրը հարմար է, թե՛ վերելքի, թե՛ վայրէջքի և թե՛ թռիչքի համար,— ասաց տղաներից մեկը և արագ սկսեց սլանալ ծառերի արանքներով։

— Բենի՛կ, սպասի՛ր, Բենի՛կ,— կանչում են մի քանիսը,— նախ վարժություններ պետք է սկսենք։— Բենիկը արագ ետ դառնալով դիմում է դեպի խումբը։

Քիչ անց տղաներն սկսում են մարմնամարզական վարժություններ կատարել...

Դահուկային արշավի դուրս եկած այս պատանիներին ճանաչում են ամբողջ ռեսպուբլիկայում։ Նրանց գիտեն նույնիսկ Մոսկվայում։ Դրանք Կիրովականի Թումանյանի անվան դպրոցի պիոներական դրուժինայի դահուկավորներն են։ Նրանք շատ հաղթանակներ են տարել դահուկային մրցումներում։ Թումանյանցիներն հատկապես հայտնի դարձան «Պիոներսկայա Պրավդա» թերթի դահուկային մրցանակի համամիութենական հեռակա մրցումներում։ Նրանք են, որ բոլորից լավ կարողանում են քայլել, սահել, թռիչքներ կատարել։

Օրը սկսում է բացվել։

— Իսկ այժմ դեպի՛ վեր, դեպի մեր «տրամպլինը»,— ասում է ընկեր Արզումանյանը։

Տղաները անտառի եզրերով բարձրանում, հասնում են «տրամպլին» կոչվող բլրակին և իրար ետևից սկսում են ցած սլանալ։

Ահա փոքրիկ Վոլոդյան պոկվում է տեղից և քիչ-քիչ արագություն վերցնելով ներքև է սահում։

Ահա մի հաստաբուն ծառ. Վոլոդյան արագ ընթացքով սահում է ուղիղ դեպի ծառը։ Կարծես թե, հիմա կդիպչի ծառին, բայց նա ճարպկորեն մի կողմ է թեքվում ու փոխում ընթացքը։ Ահա և ներքևի բլրակը՝ երկրորդ «տրամպլինը»։ Մի ակնթարթում դահուկավորը երևում է օդի մեջ, ապա կիսաշրջան կատարելով նորից իջնում է ձյան վրա և ամբողջ թափով ցած սլանում։

— Ղուկաս Ղազարյա՛ն, տեսնենք, թե դու սովորե՞լ ես թռիչքը և մի կողքի սահելը,— դիմում է ընկեր Արզումանյանը մի առողջ դեմքով տղայի։

— Կփորձեմ, գուցե այսօր հաջողվի,— պատասխանում է Ղուկասը և մոտենում բլրի գագաթին։

— Մեկ... երկու... երեք... գնացի՜...

Նա ճարպկորեն անցնում է ծառերի մոտով։ Ահա և «տրամպլինը»։ Նա օդի մեջ անկանոն պտույտ գործելով խրվում է ձյան մեջ։

— Դե՜, սկզբից էլ գիտեի, որ անհաջող է լինելու,— դեմքի ձյունը մաքրելով դժգոհում է Ղուկասը։

— Չի ստացվում, և գիտեմ, որ չի էլ ստացվելու, ընկեր Արզումանյա՛ն։

Մարզիչը, որ դահուկներով հասել էր նրա մոտ, պատանուն օգնեց վեր բարձրանալ, բռնեց նրա թևից և մի կողմ տարավ։

— Իսկ այժմ մենք երկուսով կսահենք և դու ճշտորեն կկատարես այն շարժումները, որ ես ցույց կտամ։

Եվ նա փոքրիկ Ղուկասի հետ միասին սկսում է կրկնել թեքությամբ սահելու և թռիչք կատարելու բոլոր վարժությունները։ Ղուկասը նորից փորձում է, բայց ոչ թե «տրամպլինից», այլ մի փոքր բարձրությունից։ Եվ այսպես կրկնում է մի քանի անգամ։

— Դե՛, հիմա նորից փորձիր,— պատանու ուսին խփելով ասում է մարզիչը։

Ղուկասը նոր եռանդով վեր է բարձրանում, ապա գեղեցիկ շրջադարձ կատարելով սահում է ներքև։ Ահա բլրակը. թռիչք։ Նորից անհաջող, բայց Ղուկասը արդեն չի խրվում ձյան մեջ։

Երրորդ փորձից հետո թռիչքը Ղուկասին հաջողվում է։ Նա ընկերների ուրախ բացագանչությունների տակ սկսում է թեքությամբ սահել։

— Ա՛յ, դա արդեն սպորտսմենի համառություն է։ Հիմա որ ամեն ինչ լավ կլինի։ Պատանի դահուկավորները նայում են մարզիչի հանգիստ, ժպտուն դեմքին։ Նրանցից ամեն մեկը լավ է հիշում, որ ինքն էլ է Ղուկասի նման եղել։ Այդպիսի պահերին միշտ օգնության է հասել մարզիչը։

Մի քանի ժամվա վարժություններից ու փոքրիկ արշավներից հետո Կիրովականի պատանի դահուկավորները շարք կազմած, ուրախ երգով դիմում են դեպի քաղաքը։

*
* *

Այսպես, համարյա ամեն օր, Վանաձորի հյուսիսային կողմում կարելի է տեսնել Կիրովականի Թումանյանի անվան դպրոցի դահուկավոր պիոներներին։ Նրանք սիրում են սպորտը, օգտագործում են առողջարար օդը, ձյունը։ Դպրոցում լավ են կենսագործում ՀամԼԿԵՄ Կենտկոմի 7-րդ պլենումի որոշումը։ Ամեն մի պիոներ ֆիզկուլտուրնիկ է։

## ԽՆԴԻՐ

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| Պ | ո | ն | կ | ն | դ | ե | ն |
| ա | ա | ՝ | փ | ր | ա | ե | յ |
| ժ | ի | յ | մ | ր | վ | ի | ն |
| ն | ռ | ա | ե | ն | ռ | ա | ն |
| ո | ա | է | վ | ր | ւ | դ | ր |
| ե | Ց | ՝ | ու | ։ | ա | ր | — |
| ր | ն | ե | ա | ի | ն | օ | ր |
| ա | կ | | ի | մ | | ը | ե |
| ե | ի | | ն | չ | | ո | ՝ |
| ե | ռ | ո | ն | վ | ն | ն | ր |
| ն | ր | ր | ա | ղ | ե | ը | գ |

Շախմատի ձիու քայլով շարժվելով կարդացեք Մ. Գորկու խոսքը պիոներների մասին։

*Կազմ. ՀԱՅԿ ԽՈՒԴՈՅԱՆ*
(Երևանի Թելմանի անվան միջնակարգ դպրոցի աշակերտ)

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ




Журнал „Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԻՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԵՎՈՒՆՑ Գ. *(խմբագիր)*, ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 02496, Պատվեր 50. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ. Ստորագրված է տպագրության 7/II—52 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1952 թ.։*